Վլադիմիր Իլյիչը մեծ ջերմությամբ էր հիշում Սիմբիրսկում ապրած իր 17 տարիները:

Ինը՞ ու կես տարեկան, 1879 թվականին, ընդունվում է գիմնազիա, որտեղ նույն տարիներին բարձր դասարաններում սովորում էր ավագ եղբայրը՝ Ալեքսանդրը:

Վլադիմիր Իլյիչը գերազանցիկ էր: Բացառիկ ընդունակությունների և ուսման ու պարապմունքների նկատմամբ ունեցած լուրջ վերաբերմունքի շնորհիվ դասարանից դասարան էր փոխադրվում առաջին աստիճանի պարգևներով:

Դժվար է ասել, թե առարկաներից որն էր ավելի սիրում, որին էր հատկապես առավելություն տալիս: Նրա գիտելիքները շատ ավելի հեռուն էին գնացել այն ամենից, ինչ դասավանդվում էր գիմնազիայում: Արտադասարանական լուրջ ընթերցանությունը, սուր, քննադատական միտքը փայլուն կերպով է արտահայտված նրա դասարանական ու տնային շարադրություններում: Շարադրությունների վրա նա աշխատում էր սեփական եղանակով:

«Երբ հանձնարարում էին տանը շարադրություն գրել,— պատմում է Դմիտրի Իլյիչը,— նա երբեք հապճեպ չէր գրում և ոչ էլ թողնում էր վերջին օրվան, որպեսզի հարկադրված չլինի ողջ գիշեր նստել, ինչպես դա անում էին նրա գիմնազիստ ընկերները: Երբ տրվում էր շարադրության թեման և նշանակվում գրելու ժամկետը (սովորաբար երկու շաբաթ), Վլադիմիր Իլյիչը անմիջապես գործի էր անցնում: Քառորդ թերթի վրա պլան էր կազմում, ապա գրում նախաբանն ու վերջաբանը: Հետո մի թուղթ էր վերցնում, երկարությամբ ծալում և ձախ կողմում սևագրություն անում, համաձայն նախապես կազմած պլանի: Աջ կողմը մաքուր էր մնում: Հետագա օրերին նա այդտեղ լրացումներ, բացատրություններ, ուղղումներ էր անում: Նշում, թե ինչ գրականությունից է պետք օգտվել:

Աստիճանաբար, օր օրի, թղթի աջ կողմը լցվում էր նշումներով, ուղղումներով, գրքերից բերված մեջբերումներով և այլն: Այնուհետև, շարադրությունները հանձնելու ժամկետը լրանալու վերջին օրերին, նա մաքուր թուղթ էր վերցնում և ամբողջ շարադրությունը ոչ վերջնական արտագրում, գրքերից կատարած անհրաժեշտ մեջբերումներով: Այդքանից հետո նրան մնում էր մաքուր տետր վերցնել և սևով սպիտակի վրա արտագրել լրիվ մշակված և պատրաստի շարադրությունը»:

Լեզվի ուսուցչուհին միշտ հիանում էր Վլադիմիր Իլյիչի շարադրություններով և հաճախ նրան ոչ թե սովորական «հինգ» էր նշանակում, այլ «հինգ» ու խաչ: Մեկ անգամ չէ, որ ասել էր, թե իրեն դուր է գալիս Վլադիմիր Իլյիչի՝ հատկապես շարադրության համար մըշակած սեփական սիստեմը, մտքերի հեղեղը սեղմ տողերում, պարզ ու հըստակ շարադրանքը:

Իր հանգամանալից, խորությամբ մըշակված շարադրություններում, գրված մաքուր գրական լեզվով, Վլադիմիր Իլյիչը առաջնորդվում էր մտքերին՝ ընդարձակություն,իսկ բառերին՝ նեղվածք սկզբունքով:

# ԳԻՄՆԱԶԻՍՏ ՈՒԼՅԱՆՈՎԸ



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## ԼԵՆԻՆ

Բացում եմ գիրքս, կարծես մի արև
Լուսե ցոլքերով թափանցել է ներս.
Այդ դու ես, Լենի՛ն, մեր մե՛ծ առաջնորդ,
Գրքիս բաց էջը լույսով ողողել:
Այդ դու ես քո վեհ հայացքը ուղղել
Համայն մարդկության պայծառ գալիքին...
Պատմել են, գիտեմ, հեռու Չիլիում
Կոմունիստները մեռնելուց առաջ
Անունդ են տվել:
Պիոներները հույսով, հավատով,
Փոքրիկ նկարդ են պահել, պահպանել:
Լենի՛ն, աշխարհի մրրիկների մեջ
Շողում ես ինչպես հույսի արշալույս,
Լենի՛ն, դու անմա՛հ, դու անշե՛ջ կրակ,
Աշխարհի վրա բացված արեգա՛կ:

*ԱՆԱՀԻՏ ՆԱՆՅԱՆ*
*Երևանի № 80 դպր., 6-րդ դաս.*

## ԽԱՉՔԱՐ

Գութանի խոփը հողն է ակոսում,
Ինչպես արյունն է ակոսել երկար
Մեր ճանապարհի քարոտ շերտերը:
Գութանի խոփը հողն է ակոսում,
Ինչպես որ վիշտն է ակոսում դանդաղ
Մարդկային հոգու կավը անմեկին...
Գութանի խոփը հողն է ակոսում,
Եվ ծեր մաճկալի քրտինքն է կաթում
Ակոսների մեջ,
Հոգնած մաճկալի քրտինքն է հոսում
Կեռ ակոսներում,
Ինչպես լավան է տենդով գալարվում
Ու փրփուր տալիս
Ապառաժների զարկերակներում:

Մուգ կապույտի մեջ
Բարկ, արևելյան արևն է եռում,
Եվ ծիլն է պայթում
Մեր հերկած արտում:
Ժայռի կատարից
Հրաբուխների շիթերն են ժայթքում
Ու նետվում երկինք:

Մեր ծլարձակած այս փոքրիկ հողի
Եվ այս ծիլերի
Արմատը քարն է,
Իսկ սարի գլխին, անդունդների մեջ,
Փոշոտ ճամփեքի
Եվ խորախորհուրդ վանքերի կողքին
Կանգնած խաչքարը
Մեր, հողի վրա
Քարով հաստատված,
Ապրելու կամքն է:

*ԱՐՄԵՆ ԴԱՎԹՅԱՆ*
*Երևանի №139 դպրոց, 9-րդ դաս.*



*ՀԱԿՈԲ ԳՈԼՈՅԱՆ, 7 տ., Գալուստյան ազգային վարժարան, Կահիրե*

# ԾԱՂԻԿ ԿՈՎԸ

Նախ մայրս իմացավ, որ մեր Ծաղիկը ծնում է: Շտապ տուն եկավ և որպես մեծի դիմեց ինձ:

— Վազի՛ր գյուղամեջ, հորդ ասա թող շուտ գա:

Հորս ոչ մի տեղ չգտա, երբ տուն եկա՝ մորս հայտնելու, փոքր եղբայրներս խմբվել էին գոմի առաջ, իսկ հայրս արդեն գոմումն էր: Թե ինչ էր կատարվում գոմում, մեզ անհայտ էր: Երբ փորձում էինք գոմ մտնել, հայրս կանգնեցնում էր մեզ ու ասում. «Կովը, որ երեխա տեսնի, կգժվի ու չի ծնի»:

Եվ դեպի գոմ կատաղած մեր երկչոտ քայլերը նույն երկչոտությամբ նահանջում էին: Միայն այն իմացանք, որ Ծաղիկի հորթուկը արու է: Իսկ թե երբ էին քեռի Թորոսենց հետ պայման կապել, տեղյակ չէինք: Միայն այն տեսանք, որ հենց ծնված ժամին հայրս մեր արու հորթուկը փոխեց քեռի Թորոսենց էգ հորթուկի հետ: Երբ հայրս հորթուկը գոմ տարավ, մենք թափվեցինք գոմի միակ անցքի շուրջը՝ դիտելու: Ներսում մութ էր, ոչինչ չէր երևում: Միայն հորս ձայնն էր լսվում.

— Ա՛յ զառամյալ, որ սատկես էլ, էս հորթը պիտի պահեմ: Ջուր ես չեմուչում անում:

Փոքրերս միանգամից իրար նայեցինք: Պարզ էր, Ծաղիկը չէր վերցնում անծանոթ հորթուկին: Հայրս գոմից դուրս եկավ մռայլ ու անխոս: Քայլերն ուղղեց դեպի սրահ, ուր

կանգնած էր մայրս:

— Հը՞, ի՞նչ եղավ, Խա-չու՛ն իշխան (այդպես էր միշտ դիմում մայրս իր ամուսնուն):

— Էդ անպիտանը չի վերցնում:

— Բա ի՞նչ արիր:

— Հենց էնպես մոտն եմ դրել:

— Վայ թե խփի սպանի:

— Ոչինչ չի լինի,— հանգստացրեց հայրս:

Օրեր անցան: Ծաղիկ կովը հորթին այնպես էլ մոտիկ չթողեց: Խեղճ հորթուկը սովից լղարեց, ոտքերի վրա չէր կարողանում կանգնել:

— Չէ՛, Ծաղի՛կ կով, էլ ոչինչ չմնաց իմ և քո միջև,— ամեն գոմը մըտնելիս ասում էր հայրս կովին, և կաթով լի շիշը վերցնելով՝ կերակրում հորթին:

Սարերը կանաչել էին: Եղբայրս Ծաղիկին ըսկըսեց արոտի տանել: Հույս ունեինք, որ նրա կաթը կշատանա: Բայց արի ու տես, որ հակառակը. Ծաղիկը տուն էր գալիս դատարկ կրծքով:

— Ա՛յ քեզ զարմանք,— ասաց հայրս ու պատվիրեց եղբորս, որ Ծաղիկի պոչը բաց չթողնի...

Ծաղիկը շարունակեց տուն գալ դատարկ կըրծքով:

— Հը՞, ի՞նչ կասես,— ասաց հայրս կովին արոտի տանող-բերող եղբորս:

— Արտասովոր ոչինչ չեղավ,— հետևեց պատասխանը:

Այնժամ հայրս ձեռքը դրեց Ծաղիկ կովի մեջքին և այսպես շշնջաց.

— Բա չէի ասե՛լ, որ իմ ու քո միջև ոչինչ չըմնաց... վերջ, ես քեզ էլ պահողը չեմ:

Հայրս գնաց մթերման կետում տեղեկանալու, թե երբ կովը տանի հանձնի: Իսկ եղբայրս մեզ պատմեց, որ Ծաղիկ կովը իսկի էլ չի ցամաքել, այլ ամեն երեկո, քեռի Թորոսենց ցանկապատի տակ իր հորթուկին է ծծեցնում:

— Բա դու ինչու՞ ես թողնում,— բարկացավ մայրս եղբորս վրա:

— Մեղքս գալիս է,— ասաց եղբայրս,— մա՛, քեռի Թորոսին վերադարձնենք իրենց հորթը, Ծաղիկի հորթը ետ բերենք:

Այդպես էլ արեցինք:

*ՍՈՒՍԱՆՆԱ ԽԱՉՅԱՆ*
*Լեռնային Ղարաբաղ, Հադրութի շրջան, գյուղ Էդիլլու, 6-րդ դաս.*

---

*ՀԱԿՈԲ ԱՐԹԻՆՅԱՆ, 10 տ., Գալուստյան ազգային վարժարան, Կահիրե*





# ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԻՆՔՆԱԹԻՌԸ

Ուրալյան մի փոքրիկ քաղաք՝ Լիսվա: Ո՛չ մայրաքաղաք է, ո՛չ էլ նույնիսկ մարզային կենտրոն, այլ քաղաքատիպ ավան՝ շրջապատված անտառներով ու բլուրներով: Պիոներների տունը շատ համեստ է. հին, փայտաշեն, երկհարկանի, ճռճռացող նեղ աստիճաններով: Նա իր վերջին օրերն է ապրում, լճափին կառուցվում է իսկական, ժամանակակից պալատ: Իսկ առայժմ բավարարվում են եղածով:

Դուք գնում եք, գնում և մի մութ սենյակում տեսնում եք ֆաներայից պատրաստված անհասկանալի նշանակության ինքնաթիռ: Այո՛, այո՛, ամենաիսկական ինքնաթիռ: Ճիշտ է, ոչ մեծ: Զափահասների համար բավական դժվար կլինի խցիկ մտնել, բայց երբ շոշափեք, նայեք ներսը, տեսնեք տախտակին ամրացված սարքավորումները՝ արագության, բարձրության, օդի խտության և այլ ցուցիչները, ապա կհամոզվեք, որ իսկական ինքնաթիռ է և նախատեսված է ամենաիսկական թռիչքների համար: Փոքր շարժիչ, երկթևանի պտուտակ, ամուր իրան և այդ ամենը փոքրացրած չափերի՝ ասես մանկական լինի... Այն պատրաստվել է հենց երեխաների ձեռքով, երեխաների համար. պիոներների ինքնաթիռ է: Եվ այն վարում են երեխաները:

Լիսվայի պիոներտան ավիամոդելագործների խմբակը վաղուց ճանաչման էր արժանացել: Հետո այստեղ եկավ բանիմաց մարդ՝ Վլադիմիր Վյուգովը, և երեխաները սկսեցին պլաներ պատրաստել: Իսկ պլաները հենց այն է, ինչով սկսվել է երկնքին տիրելը, օդագնացությունը՝ Օտտո Լիլենթալի ստեղծած թեթև թևերը, Ռայթ եղբայրների առանց շարժիչի կառուցվածքը...

Պլաները՝ համարձակություն է, գիտելիք է ու շնորհք: Եվ այսպես, պիոներտանը հայտնվեցին տաս[illegible]րկու, տասը, նույնիսկ [illegible] տարեկան պլաներիս[illegible]ներ: Թռչում էին ոչ միայ[illegible]ղաները, այլև աղջիկնե[illegible]ը՝ Վերա Լոբանովան, Օլյա Յակշինան, Օլյա Բուշմելևան...

Զարմանալի է, չէ՞, դպրոցականները՝ պլաներիստներ: Սակայն մարդը երբեք չի բավարարվում ձեռք բերածով, եթե ըսկըսել է թռչել, ուրեմն նրան տուր ողջ երկինքը՝ հեռավոր ու բարձր...

Այո՛, պլաները լավ էր, իսկ ի՞նչ կլինի, եթե ինքնաթիռ պատրաստեն,

շարժիչով... Եվ երեխաները Վլադիմիր Կոնստանտինովիչի հետ գործի անցան: Բոլոր հաշվարկները իրենք արեցին, իսկ նյութական մասը շեֆերից ստացան: Մեկ տարի անց ստեղծվեց «Արագիլ» («Аист») պիոներական ինքնաթիռը:

Երբ «Արագիլը» պատրաստ էր, սկզբում երեխաներին արգելում էին թռչել: Տեսնվա՞ծ բան է՝ ինքնաշեն ինքնաթիռ, երեխաներ՝ օդում: Իսկ եթե փորձանք պատահի՞: Պլաները դեռ ոչինչ, կառուցվածքի փորձարկում էր, ու՞ր պիտի գնար՝ ո՛չ բարձր էր թռչում, ո՛չ էլ հեռու... Եվ ընդհանրապես, ո՞վ կարող է մտածել, որ երեխաների ձեռքով պատրաստված ինքնաթիռը կարող է օդ բարձրանալ և թռչել:

Երկար պետք է բացատրել, թե երեխաները ինչպիսի դժվարությամբ նման թույլտվություն ձեռք բերեցին. Վյուգովը ստիպված էր Մոսկվա հասնել: Եվ ի վերջո «Արագիլով» թռչելու թույլտվությունը ստացվեց...

ԼԻՍՎԱՅԻ ՊԻՈՆԵՐՏԱՆ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԻՑ

«...Արագիլ ինքնաթիռը նախատեսված և կառուցված է պիոներական սավառնակաշինական խմբակի դպրոցականների ձեռքով.

Տեխնիկական տվյալները՝

թևերի երկարությունը— 8,75 մ

ինքնաթիռի երկարությունը— 5,7 մ

բարձրությունը՝ կանգնած տեղում— 2,2 մ

քաշը — 160 կգ

թռիչքային քաշը —250 կգ

օգտակար բեռը —90 կգ

արագությունը՝ թռիչքային— 80 կմ/ժ

վայրէջքային— 52 կմ/ժ

Մ—62 շարժիչով «Արագիլը» կատարել է 172 թռիչք, թռել է 72 ժամ 45 րոպե»:

Պիոներական ինքնաթիռը լիսվացի շատ երեխաների համար ճանապարհ է հարթել դեպի մեծ օդագնացություն: Սերյոժա Բելյաևը դարձել է պերմյան ավիաակումբի օդաչու-մարզիկ, Տոլյա Լիպնյագովը՝ դեսանտային, Կոլյա Մարկուշինը և Սերյոժա Իվանովը՝ բարձրագույն ռազմաօդային ուսումնարանի սաներ են, շուտով ռազմական օդանավի օդաչու կդառնան... Օլյա Բուշմելևան ուսանողուհի է և սովորում է Կույբիշևի ավիացիոն ինստիտուտում:

Եթե դուք լինեք Լիսվայում, ապա արդեն չեք կարող տեսնել «Արագիլի» թռիչքը: Ինչպես օդաչուներն են ասում, «Արագիլը» թռել է իր շարժիչի հնարավորության չափ: Այժմ այն դրված է պիոներտանը որպես թանգարանային նմուշ: Բայց դրա փոխարեն շուտով կտեսնեք, «Արծվիկի» («Орленок») թռիչքը, որը ավելի կատարելագործված մեքենա է և նույնպես լիսվացի երեխաներն են պատրաստում:

*ՕԼԵԳ ՕՐԼՈՎ*



Իմ հորաքրոջ տղա Վարդանը հավանել էր մեր փողոցի կեռմանում գտնվող քարե ցանկապատով տան մեջ ապրող մի աղջկա, որի անունը ոչ ոք չգիտեր, ոչ ոք նրա երեսը չէր տեսել:

—Որտե՞ղ ես տեսել,— հարցրեցի Վարդանին, որը Գետառի սև քարե կամուրջի բազրիքին նստած՝ տխուր նայում էր պղտոր ջրերին:

— Ծուկայում, պապի հետ դեղձ էին ծախում,— ասաց Վարդանը:

— Որ տեսար, հետո՞...

— Կկանչեմ:

— Բա որ չգա՞:

— Կգա: Իմ ձայնը որ լսի, կգա,— համոզված ասաց Վարդանը:

— Ասենք թե եկավ, հետո՞...— հարցրեցի ես:

Իմ հորաքրոջ տղա Վարդանը նայեց ինձ, նայեց քարե պարիսպներին, նայեց Գետառի պղտոր ջրերին ու թոթվեց ուսերը:

Պարիսպը բավականին բարձր էր Վարդանի հասակից, իսկ է՛լ ավելի՝

# Կարմրաթուշ դեղձերը

*ՌՈՒԲԵՆ ՄԱՐՈՒԽՅԱՆ*

— Չգիտեմ,— ասաց Վարդանն ու հառաչեց:

— Բա հիմա ի՞նչ ես զգում,— հարցրեցի ես:

— Տխրությո՛ւն,— ասաց Վարդանը:

Նա ինձանից մեծ էր հինգ տարով. վերին շրթունքի վրա արդեն բեղեր էին ծլել և նրան շատ էին սազում:

Մի քիչ լռեցինք, չգիտեի ինչպես մխիթարեի նրան:

— Ամեն մարդ պարտավոր է պայքարել իր երջանկության համար,— ներքին համոզմունքով ասաց Վարդանն ու ձեռքը դրեց ուսիս:

— Ինչպե՞ս:

— Գնանք նրանց պարսպի մոտ, դու կռացիր, ես բարձրանամ մեջքիդ: Ով գիտե, գուցե բակում է, կտեսնեմ,— ասաց Վարդանը:

— Եթե բակում լինի ի՞նչ կանես:

ինձանից: Ես կպա պատին ու կռացա: Վարդանը հանեց կոշիկները, բարձրացավ մեջքիս ու պապանձվեց:

— Հը՞, տեսնո՞ւմ ես,— ծանրության տակ տնքալով հարցրեցի ես:

— Ինչ դեղձի ծառեր ե՛ն,— թուքը կուլ տալով ասաց Վարդանը:

— Աղջկան տեսնո՞ւմ ես,— հարցրեցի ես:

— Պիտի սպասենք, որ տանից դուրս գա,— ասաց Վարդանը:

— Չէ՛, մեջքս կոտրվում է, չեմ կարող սպասել, իջի՛ր:

Վարդանը սողեց: Եվ հենց այդ պահին լսվեց կատաղած շան հաչոց:

— Գողե՛ր, անամոթնե՛ր,— լսվեց մեկի բղավոցը:

Վարդանը ցատկեց ներքև, վերցրեց կոշիկներն ու կարգադրեց.

— Փախա՛նք...

Ես վազեցի նրա ետևից: Մենք անցանք ոլոր-մոլոր փողոցներով, մտանք մեր բակը, ամուր փակեցինք դուռը ու դարպասը, լուռ նայեցինք իրար:

— Որ բռնել էր, կսպաներ,— հևիհև ասաց Վարդանը:

Մյուս օրը կեսօրին նա նորից հայտնվեց:

— Աչքերդ փակի՛ր, մինչև չասեմ չըբացես:

Ես աչքերս փակեցի ու սպասեցի:

— Բա՛ց,— ասաց Վարդանը:

Վարդանի տեղ, իմ դեմ կանգնած էր մեծ քթով, սև ճանճի թևերի նման բեղերով, ճռռթած աչքերով, գլխին ծռմըռված գլխարկ դրած մի այլանդակ մարդ:

— Վարդա՞ն,— ասացի ես:

— Հայլ Հիտլեր, մեծ ֆուրեր, խոզի գոճի շուլեր,— աջ ձեռքը առաջ պարզելով մրթմրթաց դիմակավորված Վարդանը:

— Վարդա՛ն,— բղավեցի ես,— խեղքի՛ արի, Հիտլերն ո՞վ է, որ ուզում ես նրան նմանվել:

Վարդանը պոկեց բեղերը, քիթը հանեց, ուղղվեց.

— Հը, ո՞նց էր:

— Վախենալու է,— ասացի ես:

— Ուրեմն լավ է: Երեկ թատրոն էի գնացել, այնտեղ տեսա Հիտլերին: Հիմա մենք պիտի թատրոն խաղանք:

— Ի՞նչ թատրոն է:

— «Հիտլերի մահը», պիեսը ես եմ գրել: Քեզ դեր եմ տալու, պատրա՛ստ եղիր: Մի քանի օրից կսկսենք,— հիմա արի գնանք, նորից նայեմ բակը, գուցե էսօր բախտս բերի, տեսնեմ:

Վարդանը միանգամից տխրեց: Ես շատ խղճացի նրան:

Կեսօր էր, փողոցում ոչ ոք չկար: Մոտեցանք պատին; ես կռացա, Վարդանը հանեց կոշիկները, բարձրացավ մեջքիս ու պապանձվեց:

— Հը՞,— տնքացի ես:

— Ոչ ոք չկա,— շշնջաց Վարդանը:

— Շատ ծանր ես, իշի՛ր:

— Մի քի՛չ էլ դիմացիր,— խնդրեց Վարդանը:

— Ընը՛, դուռը բացվեց,— շշուկով ասաց Վարդանը,— նա է... Օ՛, նա է:

— Դե կանչի՛ր, շո՛ւտ արա,— ասացի ես:

— Անր անունը չգիտեմ,— խեղճացավ Վարդանը և հանկարծ երգեց.

— Վիրավոր լո՜րիկ, սևավոր լո՜րիկ...

Ու հենց այդ երգի վրա շունը սկսեց հաչել, և մեկը բարձրաձայն բղավեց.

— Գողե՛ր, անամոթնե՛ր, շո՛ւն-շան որդու զավակներ, որ բռնել եմ, կսպանեմ:

— Փախե՛նք,— կարգադրեց Վարդանը և մեջքիցս ցատկելը, կոշիկներն առնելն ու փախչելը մեկ եղավ: Ես վազեցի նրա ետևից: Քարե պարիսպներով տան դուռը բացվեց, հայտնվեց բարձրահասակ մի մարդ՝ երկար փայտը ձեռքին, ու ընկավ մեր ետևից:

— Կանգնե՛ք, թե տղամարդ եք, կանգնե՛ք,— բղավում էր նա ձեռքի փայտը ճոճելով:

Երբ մի կերպ հասանք տուն, պինդ փակեցինք դուռը ու դարպասը, Վարդանն ասաց.

— Կատաղած մարդ էր, որ բռնել էր, կսպաներ:

— Եթե ճանապարհը չփոխեինք, անպայման կբռներ,— շունչս մի կերպ տեղը բերելով խոսեցի ես:

— Լսի՛ր, չլինի՞ վախեցար,— ասաց Վարդանը:

— Չէ՛,— ասացի ես, չնայած կարգին վախեցել էի:

Վարդանը գնաց, երեք օրից եկավ:

— Պիեսը պատրաստ է: Կեսօրվանից կարող ենք փորձերն սկսել:

— Ի՞նչ պիես:

— «Հիտլերի մահը», երկու հոգի էլ որ կանչենք, մի երկու փորձից հետո ներկայացումը պատրաստ կլինի, կսկսենք խաղալ: Որ ուզենք տոմս էլ կծախենք,— ասաց Վարդանը:

— Փողո՞վ:

— Ենքան պաղպաղակ կառնենք, որ ուտե՛նք, ուտենք չվերջանա: Նրանց պարսպի մոտ կխաղանք, կգա նայելու, անպայման կգա:

Ես կանչեցի իմ ազգական Առաքելին, և մեր հարևան Մնացականին:

Վարդանն ասաց.

— «Հիտլերի մահը» պիեսը ես եմ հորինել: Ուրեմն Հիտլերը կատաղած քայլում է իր սենյակում ու հետո էլ գոռգոռում է: Ետևից սսկված քայլում են երկու թիկնապահները: Էդ ժամանակ ներս է մտնում Ծպոն ու տեղնուտեղը ատրճանակով սպանում Հիտլերին:

— Ծպոն ո՞վ է,— հարցրեց Մնացականը:

— Ծպտված հետախույզը,— ասաց Վարդանը, ծոցից հանելով փայտյա ատրճանակը:— Արա՛մ, դու Հիտլերի դերը կխաղաս, Մնացականն ու Առաքելը թիկնապահներդ կլինեն: Ծպոյի դերն էլ՝ ինձ:

Վարդանը գրպանից հանեց մեծ քիթը, որի տակ սև ճաճի թելերի նման բեղեր էին ամրացված, դրեց դեմքիս ու թելով կապեց ականջներիս մոտ: Գլխիս էլ ծռմռված մի գլխարկ խոթեց:

— Վա՜յ, էս ի՞նչ դարձար,— զարմանքից քար կտրեց Մնացականը:

— Տեսա՞ք,— ոգևորվեց Վարդանը,— Մնացակա՛ն, Առաքե՛լ, դուք կանգնեքահա այստե՛ղ,— Մնացականին ու Առաքելին կանգնեցրեց իմ աջ ու ձախ կողքերին,— ահա այսպե՛ս: Հիտլե՛ր, հիմա սկսի՛ր գոռգոռալ և կատաղած քայլել:

— Ի՞նչ գոռգոռամ,— հարցրեցի ես:

— Ասա՝ կոտորե՛լ, ջնջե՛լ, փշրե՛լ, հա՛յլ, վա՛յլ, մա՛յլ, կախե՛լ, իբր գերմաներեն ես խոսում,— ասաց Վարդանը:

Ես ինչքան ուժ ունեի՝ սկսեցի գոռգոռալ, նորանոր բառեր հնարել, ներհար ձեռքերս թափահարել: Մնացականն ու Առաքելը վախից սկսեցին այս ու այն կողմ վազվզել:

— Լավ է, շատ լավ,— խրախուսեց Վարդանը,— հիմա Մպոն կմտնի ներս ու կասի. «Ձեռքերդ վեր, Հիտլեր»: Դու ձեռքերդ վեր կբարձրացնես, ես կկրակեմ, կընկնես գետին ու կմեռնես: Հասկացա՞ք:

— Հասկացանք,— ասացինք մենք:

Երեք օր մեր ցախատանը փորձեր արեցինք ու երբ Վարդանը ասաց, թե ներկայացումը պատրաստ է, ստվարաթղթե մի արկղ ճարեցինք, կտրատեցինք և գունավոր մատիտներով վրան գրեցինք.

«Նոր ներկայացում: «Հիտլերի մահը»: Խաղում են մեր թաղի տղաները: Ներկայացումը տեղի կունենա վաղը ժամը վեցին, Գետառի ափին, քարե պարսպի տակ: Մուտքն ազատ է»:

Գունավոր ափիշը փակցրեցինք փողոցում, մենք էլ կանգնեցինք կողքին: Մեր թաղի համարյա բոլոր բնակիչները եկան կարդացին մեր ափիշը, ժպտացին ու հեռացան:

Մյուս օրը մենք գնացինք քարե պարըսպի տակ, մի հարմար տեղ ընտրեցինք, ջուր ցանեցինք, ավլեցինք, մի հին ջարդված աթոռ գտանք, երեք ոտանի մի սեղան, մի հին կարպետ, ու բեմ պատրաստեցինք: Ժամը վեցին մոտ, մեր թաղում ինչքան երեխա կար, իրենց տատիկների ու պապիկների հետ եկան, նստոտեցին դիմացի ցանկապատի քարերին:

Ես իմ երկու թիկնապահների, այսինքն Մնացականի ու Առաքելի հետ կարպետի ետևից դուրս եկա նստեցի ջարդված աթոռի վրա, հետո վեր թռա տեղիցս, սկսեցի գոռգոռալ և կատաղած ետ ու առաջ անել բեմում: «Սարսափած» թիկնապահներս, լուռ ու մունջ, քայլերը համապատասխանեցնելով իմին, գալիս էին ետևիցս: Պառավներից մի քանիսը անիծեցին:

— Մուրա՛զդ փորդ մնա, անտե՛ր շուն Հիտլեր:

Այդ խոսքերից ավելի ոգևորվեցի, չգիտեմ, թե ինձ հետ ինչ եղավ, հարձակվեցի խեղճ Մնացականի վրա, բռնեցի նրա կոկորդից և ինչքան ուժ ունեի բղավեցի.

— Հա՛յլ Հիտլեր, կոտորե՛լ, ջարդե՛լ, ավերե՛լ, Երևանը գրավե՛լ:

Անհա, ճիշտ այդ պահին, ասես գետնի տակից, դուրս թռավ իմ հորաքրոջ տղա Վարդանը, գլխին փիրակապ, կուրծքը բաց ու քաջաբար բղավեց.

— Երևա՞նն ես ուզում գրավել խոզի՛ գոռի Հիտլեր: Ձեռքերդ վե՛ր,— նա ծոցից հանեց փայտյա ատրճանակը ու դեմ արեց ճակատիս:

— Ո՞վ ես դու,— դողդողալով հարցրեցի ես՝ այսինքն Հիտլերը:

— Ես Մպոն եմ, հայ հետախույզ Վարդանը: Ես եկել եմ քեզ շանսատակ անելու:

Վարդանը մի քանի քայլ ետ գնաց ու կրակեց.

— Բո՛ւմ, բո՛ւմ, բո՛ւմ...

Բայց մեզանից ոչ ոք վայր չընկավ: Վարդանը շշուկով ասաց.

— Մնացակա՛ն, Առաքե՛լ, ընկե՛ք, կրակել եմ,— նորից ատրճանակը ուղղեց նրանց վրա՝ բո՛ւմ, բո՛ւմ, բո՛ւմ,— կրակեց:

Մնացականն ու Առաքելը ընկան գետին, սկսեցին խռխռալով թավալվել: Քարերի վրա նստած երեխաները ծափ տվեցին:

— Հերթը քեզ հասավ, խոզի՛ գոռի Հիտլեր,— ծնկով կողիս հարվածելով բղավեց Վարդանը և ատրճանակն ուղղեց ճակատիս:

— Մի՛ կրակիր, հանձնվում եմ, մի՛ կրակիր,— կարծես հեռվից ականջիս հասավ իմ փոխված ձայնը:

Հենց այդ ժամանակ, հանդիսատեսների միջից դեպի մեզ եկավ բարձրահասակ ու թիկնեղ ծերունին, որն անցած

օրը փայտը ճոճելով վազում էր մեր ետևից:

— Չխնայես, զա՛րգ, մեռնիմ արև-վուդ,— ասաց նա:

— Վարդա՛ն փախչե՜նք, տանտերը գալիս է,— շշնջացի ես:

— Ո՞ւր փախչեք, կացե՛ք, բան պի-տի ըսեմ: Հետախո՛ւյզ Ծպո, մեռնիմ արևուդ,— բեմ ելնելով ասաց նա:— Ըսա՝ «Էնվե՛ր, Թալեա՛թ, Հիտլե՛ր», նոր զարգ էդ շան: Երեքին մեկ անգամից սպանե, ղո՛ւրբան:

Բեմից իջավ, գնաց նստեց պարսպի վրա, երեխաների մոտ:

---

*ՍԻԼՎԱ ՊՈՅԱՃՅԱՆ, 11 տ., Գալուստյան ազգային վարժարան, Կահիրե*



Վարդանը շունչ առավ ու հերոսաբար բղավեց.

— Էնվե՜ր, Թալեա՜թ, Հիտլե՜ր ձեր վե՜րջն է...

Ես նրա կրակոցին էի սպասում: Փո-րըս բռնեցի, ճոճվեցի, ընկա գետին ու մեռա:

— Կեցցե՛ հաղթանակը,— գոչեց Վարդանը, ոտքը դնելով փորիս:

Բոլորն սկսեցին ծափահարել, բղա-վել:

Մնացականը սողեսող մոտեցավ ու կարպետով փակեց բեմը:

Տատիկները թոռներին գրկեցին ու քստքստացնելով գնացին իրենց տնե-րը: Մենք սկսեցինք բեմը քանդել: Այդ ժամանակ մեզ մոտեցավ բարձրահա-սակ ծերունին:

— Երթանք տուն, ջուր խմեք, հան-գըստացեք, նոր կերթաք: Երկա՛ր արև եղնիս, հետախո՛ւյզ Ծպո, լավ զարգիր իդա շներին:

Վարդանն ու ես նայեցինք իրար: Վարդանն ինձ աչքով արեց, որ նշա-նակում էր, թե բախտներս բերում է: Ես կարպետը փաթաթեցի, առա թևիս տակ ու գնացինք նրա ետևից:

— Նստեցե՛ք,— բակում փայտյա սե-ղանն ու աթոռները ցույց տալով ասաց բարձրահասակ ծերունին: Մենք լուռ շարվեցինք սեղանի շուրջը, աչքներս գցելով երկնքին:

— Սոնա՛,— կանչեց ծերունին:

— Լսում եմ, պա՛պ,— ներսից լըս-վեց մի քնքուշ ձայն:

— Դե՛ղձ բեր:

— Հիմա, պա՛պ,— նորից լսվեց ձայ-նը:

Վարդանը շունչը պահած, հուզմուն-քից աչքերը լցված նայում էր դռանը, որտեղից գալիս էր ձայնը: Դռների մեջ երևաց Սոնան, ձեռքին՝ մի մեծ սալա,

մեջը՝ լիքը կարմրաթուշ դեղձեր: Նա մանր քայլերով մոտեցավ մեզ, սալան դրեց սեղանին ու գնաց:

— Դե՛ղձ կերեք, տղե՛րք,— ասաց բարձրահասակ ծերունին:

Ես, Մնացականն ու Առաքելը վրա տվեցինք դեղձերին ու սկսեցինք արագ-արագ ուտել:

— Սրանից հետո, որ էդ խաղը խաղաք, վերջում կերգեք իսա երգ,—ասաց ծերունին ու սկսեց երգել.

Ա՛յ փիդայի, ջա՛ն փիդայի,
Ձեզ հետ տարեք զիմ տղեն,
Ձեզ հետ ապրի, ձեզ հետ մեռնի,
Ազգին մատաղ զիմ տղեն:

Կրկներգին ոգևորված ձայնակցեցինք նրան:

— Ծա՛տ ապրիք,— ասաց ծերունին և մեր ծոցերն ու գրպանները դեղձ լցրեց ու ճամփեց տուն:

Երբ հասանք մեր դարպասին, իմ հորաքրոջ տղա Վարդանը՝ աչքերը երազներով լցված, հարցրեց.

— Հը՞, ո՞նց էր Սոնան:

— Հրաշք էր,— ասացի ես:

— Վաղը նորից ենք «Հիտլերի մահը» խաղալու: Վերջում ես կերգեմ նրա պապի երգը,— ասաց Վարդանն ու այդ երգը երգելով գնաց:

Մենք դարձյալ ու դարձյալ խաղացինք այդ ներկայացումը, հույսով, որ պապի հետ Սոնան էլ կգա դիտելու: Եվ դադարեցինք, համոզվելով, որ նրան մեր ներկայացումը չի գրավում: Նա երևի իսկական թատրոն էր գնում, իսկական դերասաններով հիանում:



1980 • ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԻՐՆԵՐԸ • 1980



«Պիոներ» ամսագրի 1980թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակին արժանացավ Անահիտ Պարսամյանը՝ «Գալարափողը», «Անպայման տեսած կլինեք» պատմվածքների և «Ամառ», «Ճնճղուկ», «Աշուն» բանաստեղծությունների համար:



Լավագույն նկարչական ձևավորման մրցանակը շնորհվեց նկարիչ Հենրիկ Մամյանին՝ «Կլիմկո» վիպակի ձևավորման համար:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 36. ՊԵՏՔ Է ՄԻ ՔԻՉ ԷԼ ԹԱՐԳՄԱՆԻՉ ԼԻՆԵԼ

Կար մի հիանալի թարգմանիչ՝ Հարություն Հարությունյան: Մեր ամսագրի ընթերցողներն այդ լավ մարդու անունը պետք է հիշեն երախտագիտությամբ, քանի որ մանուկների ու պատանիների համար ոչ ոք այնքան շատ գիրք չի թարգմանել, որքան նա: Եթե դուք մայրենի լեզվով կարդում եք Ալ. Դյումա-հոր «Երեք հրացանակիրները», Վ. Հյուգոյի «Իննսուներեքը», Դանիել Դեֆոյի «Ռոբինզոն Կրուզոն», Կ. Ուշինսկու, Ա. Կուպրինի, Մ. Գորկու, Վ. Կորոլենկոյի, Ա. Գայդարի, Մ. Պրիշվինի պատմվածքներն ու հեքիաթները, ապա իմացեք, որ այդ ամենը Հարությունյանի երկարամյա ազնիվ տքնության արդյունքն է: Կարդալով այդ գրքերը, կտեսնեք, թե նա որքան լա՛վ է թարգմանել, հմտորեն հայացրել այդ հեղինակներին հայ ընթերցողի համար:

Այսքանը՝ ի դեպ, մարդու լավ գործը բարի խոսքով հիշելու համար:

Մի անգամ Հարություն Հարությունյանը Հայաստանի պետական հրատարակչության մանկապատանեկան բաժին մտավ լավ տրամադրությամբ: Եվ ասաց պատճառն ինչ է. միտք է արել, թե ինչպես պետք է թարգմանի «утро вечера мудренее» դարձվածքը և գտել է դրա հայերեն համարժեքը՝ «լույսը կգա՝ բարին հետը»: Իրոք, լավ է գտնված: Զուր չէ, որ տարիքն առած թարգմանիչը երեխայի պես հրճվում էր իր գյուտով: Չէ՞ որ դա էլ թարգմանչի գյուտն է: Լավ թարգմանությունն այդպիսի մեծ ու փոքր գյուտերի հանրագումարն է: Իսկ հմուտ թարգմանիչը՝ այդօրինակ գյուտերի մասնագետը:

Լեզուն այնքան բարդ ու նուրբ, փոխուն ու քքուշ երևույթ է, որ մշտապես կարոտ է վերապահումների, բացառությունների, ընդհանուր կանոնից արվող շեղումների, չափի ու ճաշակի նրբին զգացման:

Ասացինք, որ իդիոմը չի կարելի մի լեզվից մյուսը թարգմանել, այլ պետք է գտնել դրա համարժեքը, բայց արդեն վերապահում անելու կարիք կա: Իհարկե, դարձվածքը չի կարելի թարգմանել, երբ օտար ընթերցողին ոչինչ չի ասում: Օրինակ «он собаку съел в подобных делах» ռուսերեն իդիոմը չի կարելի թարգմանել՝ «նման գործերում նա շուն է կերել», այլ պիտի հասկանալ այսպես՝ նա այդ գործերի վարպետն է կամ՝ նրա մազերը նման գործերում են սպիտակել: Բայց ահա, իսպանացի թատերագիր Լոպե դե Վեգան ունի մի կատակերգություն «Շունը դեզի վրա» վերնագրով: Ի՞նչ եք կարծում, չի՞ կարելի այդ իդիոմը հենց բառացի էլ թարգմանել՝ դրա տակ հասկանալով վարքագիծն այն մարդու, որ ոչ ինքն է վայելում (ինչ էլ որ լինի), ոչ էլ ուրիշին է թողնում

վայելել, ինչպես դեզի վրա նստած շունը, որ, ինչպես հայտնի է, խոտ չի ուտում և խոտակերներին էլ մոտ չի թողնում դեզին: Կարելի է, որովհետև դարձվածքի այդ իմաստը պարզ կռահվում է և ապա՝ դա մեզ պատկերացում է տալիս մեկ ուրիշ ժողովրդի լեզվամտածողության, հումորի մասին և դեռ մեր լեզուն էլ հարստացնում նաև մի ինքնատիպ իդիոմային արտահայտությամբ: Միշտ այդպես էլ, կարծում եմ, վստահորեն կարելի է թարգմանել «եղանակ ստեղծել» իդիոմը, գրելով՝ «նա իր ասպարեզում եղանակ ստեղծող մարդ է» և հասկանալ, որ խոսքը վերաբերում է ազդեցիկ, զորավոր մարդուն:

Ժամանակին Երևանում ցուցադրվում էր մի հնդկական կինոնկար՝ «Աղջիկը Բոմբեյից» վերնագրով: Կարդալով այդ ազդագիրը, դուք իսկույն կնկատեիք բացահայտ սխալը՝ պետք է գրված լիներ «Բոմբեյցի աղջիկը», հայերեն և հասկանալի: Այսպես, այդ սխալի տրամաբանությամբ առաջ գնալով, պիտի ասեինք՝ «Դավիթը Սասունից»:

Մի երկու տարի առաջ բանաստեղծ Գևորգ Էմինն իրեն հատուկ սրամտությամբ մի հոդված էր գրել խայտառակ թարգմանիչների մասին: Կարդացել էր, որ պետք է ցուցադրվի «Գործծխախոտ» կինոնկարը: Տարօրինակ վերնագիրը զարմացրել էր նրան: Ստուգել էր ու տեսել՝ դա ռուսերեն «дело-табак» իդիոմն է, որ նշանակում է ոչ այլ ինչ, քան «բանը բուրդ է», իսկ սա էլ հայերեն իդիոմ է, որ չի կարելի «дело-шерсть» թարգմանել: Մի ուրիշ թերթում էլ կարդացել է «աստծու կովիկներ» արտահայտությունը և կռահել՝ դա «божья коровка» միջատն է, որ «ոչ մի կապ չունի ոչ աստծո և ոչ էլ մանավանդ նրա չեղյալ կովերի հետ, այլ պարզապես դա այն կարմիր, գեղեցիկ բզեզ-միջատն է, որին մենք՝ հայերս, զատիկ ենք ասում...»

Ա՛յ թե ինչ ծիծաղելի վիճակի մեջ են ընկնում մարդիկ, որոնք գաղափար չունեն ռուսաց և հայոց լեզուների յուրահատկությունների մասին: Եվ մարդ որքան շատ լեզուներ իմանա՝ այնքան լավ, լավ ոչ միայն ինքնըստինքյան (մեր ժողովուրդը զուր չի ասում՝ քանի լեզու գիտես, էնքան մարդ ես), այլև մայրենի լեզվի էության մեջ թափանցելու, նրա յուրահատկությունները լավ հասկանալու համար:

Մի շարք օրինակներով մենք ցույց տվեցինք, թե դարձվածքները ինչքան տարբեր իմաստ են կրում տարբեր լեզուներում: Բայց այդ նույնը կարելի է ասել նաև առանձին բառերի մասին:

Վերցնենք ռուսերենում այնքան գործածական, պարզ, թվում է թե ոչ մի տարակուսանքի տեղիք չտվող положительно բառը: Դա ի՞նչ է նշանակում: Իսկույն կասեք՝ դրական, դրականորեն: Բայց եկեք չշտապենք: Իրոք, եթե ռուսերեն գրված է, ասենք, «он к этому делу относится положительно», դա նշանակում է՝ նա այդ գործին դրականորեն է վերաբերում: Բայց եթե գրված է՝ «он положительно ничего не смыслит в этом деле», ի՞նչ եք կարծում՝ դա կնշանակի նա դրականորեն ոչինչ չի՞ հասկանում այդ գործից: Իհարկե, ոչ: Դա ի՜նչ անհեթեթություն է, կասեք դուք, «դրականորեն ոչինչ»: Մինչդեռ այս նախադասության մեջ բառն ուրիշ իմաստ ունի՝ կատարելապես: Եվ դուրս կգա՝ նա կատարելապես ոչինչ չի հասկանում այդ գործից: Ուրիշ դեպքերում այդ բառը կարող է նշանակել միանգամայն, բոլորովին, վճռականորեն, որոշակիորեն և այլն:

Մենք արդեն գիտենք, որ բառերի մեծագույն մասն ունի մեկից ավելի, երբեմն մի քանի տասնյակ նշանակու-

թյուն։ Այդ մեծաթիվ նշանակություն-ներն են, որ տարբեր լեզուներում կարող են համընկնել, կարող են և բնավ չհամընկնել (ինչպես այդ տեսանք վերևը բերված օրինակով)։

Այդ բարդությունը որոշ լեզվաբաններ հասցրել են ծայրահեղության։ Մի գերմանացի լեզվաբան ժամանակին, մեր դարի 30-ական թվականներին, հատուկ գիրք է գրել ապացուցելու համար, թե գերմանացիները և ֆրանսիացիները երբեք չեն հասկանա միմյանց, քանի որ «ազատություն», «խելք», «կամք» և ուրիշ բառեր նրանց լեզուներում տարբեր երանգներ ունեն։

Սա արդեն երևույթի ծայրահեղացումն է, մի տեսակետ, որից պետք է հեռու կենալ, քանի որ դա ժողովուրդներին բաժանող, նրանց միավորումը խանգարող տեսակետ է։ Աշխարհի ժողովուրդների բազմադարյան փորձը, և ամենից ավելի մեր բազմազգ հայրենիքի կենդանի փորձն այդ տեսակետի հերքումն են. թարգմանչական մեծ արվեստի շնորհիվ, միմյանց լեզուների, մշակույթների, ավանդույթների ճանաչման շնորհիվ ժողովուրդները կարողանում են դաշնակցել, բարեկամանալ, միավորվել՝ առանց կորցնելու այն յուրահատկությունները, որ բնորոշ են իրենց լեզվին ու մշակույթին։

Ի՞նչ են հուշում մեր վերջին զրույցները. այն, որ ամեն մի լեզու մի առանձնահատուկ երևույթ է իր մտածողությամբ, շարահյուսմամբ, իր ամբողջ համակարգով, դարձվածքների, բառերի պաշարով։ Եվ լավ խոսել կամ գրել մի որևէ լեզվով նշանակում է իմանալ տվյալ լեզվի յուրահատկությունները, մտածել այդ լեզվով։ Ուրեմն, ամեն լեզու մտածելու իր կերպն ունի, հայերենն էլ՝ իրենը։

Ի՞նչ՞ ասել է մտածել հայերեն։

Այդ մասին՝ հաջորդ անգամ։




●

Երբ Եգիպտոսի Պտղոմեոս երկրորդ թագավորը արգելեց Ասորիքին պապիրուս մատակարարել, վերջինի մայրաքաղաքում՝ Պերգամոնում, գտան գրելու նոր նյութ՝ ոչխարի կաշվից պատրաստած մագաղաթը։ Երկար դարեր մագաղաթը մրցում էր պապիրուսի հետ։

●

Թուղթը շատ երկար ժամանակ համարվում էր անհուսալի նյութ։ Հռոմի կայսր Ֆրիդրիկոս երկրորդը 1231 թվականին արգելեց պետական նշանակություն ունեցող փաստաթղթերը գրել թղթի վրա։ Այդ արգելքը տևեց երեք հարյուր տարուց ավելի։

●

1831—33 թվերին Ֆրանսիայում թերթը տպագրում էին մետաքսի վրա։ Այն ժամանակ թղթի վրա մեծ տուրք էր նշանակված և հրատարակիչները դիմում էին թղթից ավելի էժան նյութերի։

Թերթը, կարդալուց հետո, մարդիկ հաճախ գործածում էին որպես թաշկինակ և այդպես էլ կոչում էին՝ «քաղաքական թաշկինակ»։ Մի քանի օրինակ այդ թերթերից պահվում է Փարիզի թանգարաններում։




Հանձնեցինք վերջին քննությունը մասնագիտական առարկայից, որ ֆրանսերենն էր: Նարինեի հետ, որը նույնպես քննաշրջանը փակել էր գերազանցով, որոշեցինք տուն դառնալ մեր սիրելի պուրակով, ուր վաղուց չէինք եղել: Առավոտից խոշոր փաթիլներով թափվում էր ձյունը, և այժմ այնտեղ ձյան թագավորությունն էր իշխում:

Քայլում էինք, քայլում, թարթելով աչքերիս ընկած ձյան փաթիլները, լուռ հիանում բնության գեղեցկությամբ: Երբ թեքվեցինք հաջորդ ծառուղին, տեսանք դեմից եկող երկու երիտասարդի, որոնցից շիկահերը քայլում էր ձեռքերը ետևում պահած, իսկ մյուսը՝ բարձրահասակ սևահերը, ցուցադրաբար խաղացնում էր ձեռքի ձնագնդին: Մենք վախով նայեցինք միմյանց: Սևահերը, շարունակելով ձեռքից ձեռք փոխադրել ձնագնդին, ժպտալով մեզ դիմեց.

— Ներեցեք, աղջիկնե՛ր, ինչպե՞ս է կոչվում այս այգին, «Հաղթանակի՞», այո՞:

Այդպես կհարցներ քաղաքին անծանոթը, որը լոկ հարևանցի լսել էր այս պուրակից առնվազն տասն անգամ մեծ «Հաղթանակի» զբոսայգու մասին, իսկ նրանք, առաջին հայացքից էլ երևում էր, որ երևանցի են և հրաշալի գիտեն հարազատ քաղաքը:

Ծածուկ նայեցի Նարինեին, տեսա, որ հանուն քաղաքավարության նա ցանկանում էր պատասխանել:

Սակայն մեր արտակարգ ուրախ տրամադրությունն ինձ վայրկենապես մի չարաճճի արարքի դրդեց, մանավանդ, որ անսպասելիորեն ճանաչեցի բարձրահասակ սևահերին, այո՛, նա էր՝ Կարենը:

Տարիներ առաջ մենք հարևան բակերում էինք ապրում և նույն դպրոցում սովորում, նա ինձնից երկու դասարան բարձր էր:

Ես, փոքրիկ ու շատ կարճլիկ էի իմ տասնչորս տարիների և մանավանդ այդ լողլող Կարենի համեմատությամբ, որի համար հավասարապես ծիծաղելի էին բոլոր նրանք, ովքեր իրենից գեթ մազաչափ ցածր էին: Նա դպրոցի լավագույն բասկետբոլիստն էր և հաճախ էր միջբակային մրցումներ կազմակերպում ու ինձ տեսնելիս անպայման հրավիրում էր իր թիմում խաղալու:

— Այ՛, եթե ծիպուկը խաղա, մենք անպայման կհաղթենք,— լիաթոք քրքջում էր նա:

Ութերորդում մենք տեղափոխվեցինք այլ բնակարան՝ քաղաքի մյուս ծայրը,

և այդ օրից չէի տեսել Կարենին ու չէի լսել նրա ինձ այնքան ցավ պատճառող «ծիպուկը», քանի որ այդ ամռանը հաստակս խիստ աճեց՝ մեծ ուրախություն պատճառելով ինձ:

Ուստի և զարմանալի չէ՞ր, որ Կարենն այժմ չճանաչեց «ծիպուկին»: Ես տեսնում էի, թե նա ինչպես զսպված ծիծաղով սպասում էր իր անհեթեթ հարցի պատասխանին: Անձկատ սեղմելով Նարինեի թևը, տղաներին դիմելով, ֆրանսերեն ասացի, որ մենք զբոսաշրջիկներ ենք՝ Լիոնից և հայերեն բոլորովին չենք հասկանում: Մազ մնաց քրքջալի, տեսնելով ընկերուհուս զարմանքից կլորացած աչքերը: Տղաները շփոթվեցին, խոսեցին ռուսերեն, ապա թոթովեցին անգլերեն, նույն բացասումը եղավ մեր կողմից: Նրանք քայլում էին մեզ հետ, փորձելով ինչ-որ կերպ հաղորդակցվել, մոռացած և՛ հարցը, և՛ քաղաքին անծանոթ լինելը:

Ծիկահերը՝ բավական տանելի անգլերենով իր հարցումներին որպես պատասխան լոկ մեր քաղաքավարի ժպիտները ստանալով, անսպասելի բորբոքվեց:

— Դեհ, խոսի՛ր էլի, Կարե՛ն, գոնե մի բա՛ն ասա, միշտ կրկնում էիր, որ՝ դպրոցում ֆրանսերեն ես սովորել:

Կարենը հուսահատ թափ տվեց ձեռքը:

Տեղն է քեզ, մտածում էի ես, լսելով նրա ափսոսանքի խոսքերը, դըպրոցում մատների արանքով էիր նայում օտար լեզվին, դե հիմա տակից դուրս արի:

— Ախ, թե անգլերեն կիմանային, թե անգլերեն կիմանային,— ստեպ-ստեպ կրկնում էր շիկահերը:

Իսկ Կարենն աներևակայելի ճիգեր էր գործադրում՝ վերհիշելու դպրոցում սովորած և այժմ քամուն տված ֆրանսերեն որոշ ֆրազներ, որպեսզի մի կերպ խոսակցություն վարի:

Այդպես էլ «չհասկանալով» միմյանց Անի հյուրանոցի մոտ բաժանվեցինք նրանցից: Մտանք վարսավիրանոց, հիշելով, որ վաղուց ժամանակն էր մեր մազերն հարդարել տալու: Երիտասարդների վրա թողել էինք այն տպավորությունը, թե մենք իրոք զբոսաշրջիկներ ենք Լիոնից, և իջել ենք Անի հյուրանոցում:





*ՄԱՐԳՐԻՏ ԹԱՀԹԱՊՐՈՒՆՅԱՆ,*
*9 տ., Գալուստյան ազգային վարժարան, Կահիրե*

# ԵՐԵԿՈ

ՎԻԿՏՈՐ
ՀՈՎՍԵՓՅԱՆ

- Մութն ընկավ արդեն, ուր որ է հիմա,
Կելնի Լուսինը լողանալու,
Ու ես էլ կելնեմ հասկ գողանալու,—
Հիմար Մկնիկը այս երգն էր ասում,
Չիմանալով, որ Փորսուղն է լսում:
— Մութն ընկավ, լավ է, ուր որ է
հիմա
Կելնի Լուսինը լողանալու,
Կելնի Մկնիկը հասկ գողանալու,
Իսկ ես էլ կելնեմ նրան բռնելու,—
Հիմար Փորսուղը այս երգն էր ասում,
Չիմանալով, որ գորշ Գայլն է լսում:
— Մութն ընկավ, լավ է, ուր որ է
հիմա
Կելնի Լուսինը լողանալու,
Կելնի Մկնիկը հասկ գողանալու,
Կելնի Փորսուղը, որ բռնի Մկան,
Իսկ ես էլ կելնեմ, կբռնեմ նրան,—
Հիմար գորշ Գայլը այս երգն էր ասում,
Չիմանալով, որ որսորդն է լսում:
- Մութն ընկավ, լավ է, ուր որ է հիմա
Կելնի Լուսինը լողանալու,
Կելնի Մկնիկը հասկ գողանալու,
Կելնի Փորսուղը, որ բռնի Մկան,
Կելնի գորշ Գայլը, որ ուտի նրան,
Հիմա ուր որ է Լուսինն իր ճերմակ
Քիթը կհանի
Նօգնի որսորդին՝ նստած ժայռի տակ,
Մատը ձգանին:










# ԱՐԱՄ ՍԱՀԱԿՅԱՆ

Երբ դուք անցնում եք ճարտարապետ Ալեքսանդր Թամանյանի հուշարձանի մոտով, կանգ եք առնում մի պահ և զըմայլված դիտում, երբ գընում եք Հաղթանակի զբոսայգի, այցելում պատերազմում զոհվածների հուշարձանին (վեր կարկառված հինգ ձեռքերը), երբ տեսնում եք Երևանյան լճի մոտ Լենինի կիսանդրին, կամ Ստեփանավանում՝ Ստեփան Շահումյանի արձանը, և կամ Մուսալեռ գյուղում՝ մուսալեռցիների հերոսական պաշտպանությանը նվիրված կոթողը, հիշու՞մ եք այն մարդուն, ում ձեռքերով կյանք են առել դրանք: Գիտե՞ք ով է նա:

Նա աշխատել է նաև Երևանի մետրոպոլիտենի «Սասունցի Դավիթ» կայարանի ձևավորման վրա, որի երեք սրահների պատերին քանդակել է մեր ազգային էպոսի հերոսներին:

— Մինչև երեսուն տարեկան հասակս,— պատմում է նա ինքն իր մասին,— գործ չեմ ունեցել քարի հետ: Իմ ծննդավայր Սիսիանում, հետո մի որոշ ժամանակ նաև Երևանում խառատ էի: Մի օր քանդակագործ բարեկամըս՝ Արտաշես Հովսեփյանը (Ալ. Թամանյանի հուշարձանի հեղինակը), խորհուրդ տվեց աշխատել իր հետ: Զանգեզուրում և այլ վայրերում շատ էի տեսել մեր նախնիների ոսկե ձեռքերով կառուցված հոյակավոր կոթողները, որոնք հայիս հպարտություն են պատճառում, օտարին՝ հիացմունք ու զարմանք: Ինչ խոսք, ընդունեցի հրավերը, թեև վստահ չէի, որ դա հենց այն ասպարեզն է, ուր ես գտնելու եմ ինքս ինձ:

Նրա առաջին լուրջ գործերը Երևանի կոնյակի գործարանի համտեսի սրահի հարթաքանդակներն ու գինեգործ վարպետ Մարգարի դիմաքանդակն էր: Հենց այդ առաջին գործերն էլ ճանաչում բերին նրան: Նա շուտով դարձավ ՍՍՀՄ ժողովրդական ճարտարապետ Ռաֆայել Իսրայելյանի սիրելին, նվաճեց հայ ճարտարապետների ու քանդակագործների հարգանքը, համարվեց ոչ թե սովորական քարագործ, այլ վարպետ քարագործ արվեստագետ:

— Նոր Հաճնում քանդակում էի Ռաֆայել Իսրայելյանի լավագույն գործերից մեկը՝ Արծիվը: Ճարտարապետն այդ ժամանակ արդեն շատ ծանր հիվանդ էր: Շտապում էի շուտ ավարտել: Վերջացնելուն պես այցելեցի նրան: Հենց իմացավ, որ եկողը ես եմ, ուրախացած բացականչեց. «Արծիվը եկավ, արծի՜վը,— ապա ավելացրեց.— Հրաշալի՜ է, բարեկա՜մս»: Տարբեր աշխատանքներ ավարտելիս գովեստի շատ խոսքեր եմ լսել, սակայն Իսրայելյանի այս խոսքերը ստացածս պարգևներից ամենաթանկն է,— ասում է քանդակագործ վարպետ Արամ Սահակյանը, որը արվեստագետների շրջանում բարձր գնահատված քանդակագործ-արվեստագետի համբավ է վայելում, և արժե որ նրան ճանաչի մեր ամեն մի դպրոցականը:

*ՎԱՀԱՆ ՄԽՅԱՅԱՆ*

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ



# ԹՌՉՈՒՆՆԵՐԸ

Ի՞նչ են ծլվլում թռչունններն այդպես,
Համե՞րգ են տալիս վաղ արշալույսին,
Տոնահանդե՞ս է, թե՞ մրցահանդես,
Որ հերթ չի տալիս մեկը մյուսին:

Գուցե դա երգ չէ, այլ տագնապի կանչ,
Ե՛վ զգուշացում, և՛ վախ խելահեղ,
Թե՝ մոտիկ ձորը չմտնեք հանկարծ,
Պարսատիկավոր տղա կա այնտեղ...

# ԱՌՅՈՒԾՆ ՈՒ ԱՂՎԵՍԸ

Որսի էր ելել առյուծը մի օր
Ու մեկ էլ ընկավ փոսի մեջ մի խոր,
Սաստիկ ոռնոցով խփվեց պատեպատ,
Բայց փոսը խորն էր, չարչարվեց նա
շատ,
Եվ մեկ էլ ահա խորունկ փոսի մոտ
Կանգնեց աղվեսը ու նայեց հեգնոտ:
— Աղվե՛ս սիրելիս,— աղերսեց
արքան,—
Օգնի՛ր ինձ դուրս գամ,
Ինչ ուզես՝ կտամ:
— Հավատա, ես քեզ կօգնեի սրտանց,
Եթե թույլ տար ինձ մայրիկս սիրած:
— Ու՞ր է մայրիկդ... կանչի՛ր,
տեսնեմ ե...

# ՓԻՍՈՅԻ ԵՐԱԶԸ

Փիսոն երազում տեսավ շնիկին,
Թուքը սարսափից դեմ առավ բկին:
— Մի՛ վախիր,— ասաց շնիկը
հանգիստ,—
Մեր վեճ ու կռվին եկ վերջ տանք
ընդմիշտ:
Ես տունն եմ հսկում,
Դու մուկ ես բռնում,
Ինչու՞ ենք ախար
Իրար հետ կռվում:
Փիսոն վեր ցցեց պոչը նաշանքով.

տեսնես:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

հանգով:
Շունն էլ, իհարկե, շատ գովեց նրան.
— Ազնի՛վ փիսոնիկ, մյա՛ու-մլավան...

Բայց հենց՝ որ փիսոն քնից արթնացավ,
Շնիկն էն կողմից վրա պրծավ՝ հա՛ֆ...
Փիսոն մոռացավ բոլոր հարցերը,
Մի շնչով հասավ սանդուղքի ծերը.
— Տեսա՞ք ինչ արեց էդ սուտ խաբլանը,
Դե արի ընկեր դարձիր դու շանը:





## Ծ Ու Ն

## ՊԱՏՐԱՍՏԻՐ ԻՆՔԴ

ՕԳՏԱԳՈՐԾՎՈՂ ՆՅՈՒԹԵՐ. սեղանի թենիսի գնդակ, խցան, 6 լուցկու հատիկ, նկարչական թուղթ:

ՊԱՏՐԱՍՏԵԼՈՒ ՁԵՎԸ.

Թենիսի գնդակը տաքացրած ասեղով ծակել: Լուցկու հատիկի մի ծայրը խրել գնդակի, մյուսը՝ խցանի մեջ:

Ականջները նկարել թղթի վրա, ներկել, կտրել ու սոսնձել գնդակին: Գնդակի վրա աչքեր ու մռութ նկարել:

4 լուցկու հատիկ՝ որպես ոտքեր և մեկը՝ որպես պոչ, խրել խցանի մեջ, տեղերը նախապես ծակելով ասեղով:



**Ինչու՞ մեկը գրատախտակի մոտ իրեն զգում է ինչպես ձուկը՝ ջրում, իսկ մյուսը վախենում է մի բառ արտասանել: Ինչպես անել, որ գրատախտակի առջև դաս պատասխանելիս մարդ իրեն ազատ զգա: Ի՞նչ է նշանակում «դասը լավ սովորել»: Վերը նշված հարցերին պատասխանում է Մ. Վ. Լոմոնոսովի անվան Մոսկվայի պետական համալսարանի հոգեբանության ֆակուլտետի պրոֆեսոր Յուլիա Բորիսովնա Գիպպենռեյտերը:**

# ԴՈՒՔ ԵՔ ԿԱԽԱՐԴԱՆՔԻՑ

Մարդիկ տարբեր բնավորության են լինում: Լինում են ուրախ, շփվող, ժիր ու կայտառ մարդիկ: Լինում են նաև մտածկոտ, լռակյաց, քաշվող: Բնավորությունները երևում ու ձևավորվում են մանկական հասակում:

Դրա համար նույն հանգամանքներում մարդիկ իրենց տարբեր ձևով են դրսևորում և տարբեր զգացողություններ ունենում:

Պատկերացրեք, աշակերտը կանգնել է գրատախտակի մոտ ամբողջ դասարանի առաջ, ուսուցիչը դիտում է նրան ուշադիր, ընկերները՝ հետաքրքրքրված, իսկ նա պետք է դժվար դաս պատասխանի, այն էլ՝ հնարավորին չափ լավ:

Ահա և որոշ երեխաներ գրատախտակի մոտ իրենց զգում են ինչպես ձուկը՝ ջրում: Ոմանք էլ մի քիչ հուզվում են: Իսկ երրորդները այնպես են տակնուվրա լինում, որ նույնիսկ «չզինված աչքով» նկատելի գունատվում են կամ կարմրում, ձայնը դողում է, անբնական բարձր է հնչում կամ բոլորովին չի լսվում, կակազում են, դադարներ տալիս, լարված մի կետի նայում: Եվ այս ամենը նաև այն դեպքում, երբ դասը լավ գիտեն: Բանն էլ հենց այն է, որ ուժգին հուզմունքից նրանք մոռանում են գիտեցածը, մըտքերը խառնվում են, անհետանում...

Նման երեխաները պետք է գիտենան, որ մեղավորն իրենց բնավորու-

թյան որոշ գծերն են՝ ամաչկոտությունը, սեփական ուժերին վստահ չլինելը, հիվանդագին ինքնասիրությունը:

Ենթադրենք, թե քո ընկերուհին բաշվող բնավորություն ունի: Իր ամաչկոտության պատճառով հաճախ դասերին անհաջողության է հանդիպում: Այդ անհաջողությունը ծանր է ապրում: Գիտի, որ արժանի չէր դրան, ջանք է արել, սովորել է, անտարբեր չի եղել: Հաջորդ անգամ դաս պատասխանելիս ամաչկոտության պատճառով նրա ապրած հուզմունքին կգումարվի նաև վատ պատասխանելու վախը: «Մի անգամ արդեն այդպես եղավ»,— կմտածի նա: Նկրկնապատկվի հուզմունքը և պատասխանը ավելի վատ կլինի: Եվ ահա կառաջանա կախարդական օղակ:

Կարելի՞ է կախարդանքից դուրս գալ:

Կարելի է: Բայց հարկավոր է համառ աշխատանք: Լավ կլինի, եթե ուսուցիչն էլ օգնի:

Ահա թե ինչ խորհուրդ կտայի ես այդպիսի երեխաներին:

Սկզբնական շրջանում գլխավոր խնդիրը իր ուժերի նկատմամբ վստահություն ձեռք բերելն է:

Այդ անել կարելի է միայն գրատախտակի մոտ «ձախողվելուց» խուսափելով:

Խնդրիր ուսուցչուհուն քեզ հաճախ կանչել գրատախտակի մոտ ավելի հեշտ դասերին, երբ դու է՛լ ավելի լավ ես պատրաստվել (եթե ինքդ ձեռք բարձրացնես՝ ավելի լավ):

Խնդրիր ընկերներիդ քեզ թիկունք կանգնել. դասարանում լռություն պահպանեն, բարյացակամ վերաբերվեն, խրախուսող ժպտան:

Այդ մասին նախապես խոսիր երեխաների, ձեր ջոկատի ակտիվի հետ:

Հիշի՛ր հաջող պատասխաններդ: Համարիր դրանք քո փոքրիկ հաղթանակները սեփական բնավորության վրա: Իսկ եթե անհաջողություններ նորից ունենաս, մի՛ շփոթվիր: Մի որոշ ժամանակ դրանք, հիարկե, դեռ կլինեն: Կարևոր է, որ դրանք գնալով պակասեն, հաղթանակները՝ ավելանան:

Եվ ապա, դասը պետք է շատ լավ սովորել: Այնքան լավ, որ ամաչկոտությունդ չխանգարի հիշողությանդ, չընփչացնի պատասխանդ:

Հասկացի՛ր, թե ինչու է դա այդպես կարևոր:

Ինչքան էլ շտապելիս լինես, վախենաս, թե դասից կուշանաս, չես դրժվարանում ճիշտ կապել պիոներական վզկապդ, հագնել վերարկուդ: Այս գործողություններից յուրաքանչյուրին արդեն վարժվել ես, բայց չէ՞ որ ժամանակին դրանք նս պրոբլեմ էին քեզ համար: Հիշի՛ր, թե ինչքան է օգնել մայրդ: Վարժվում են ոչ միայն արտաքին գործողություններին, այլև՝ ներքին, մտավոր: Օրինակ՝ բազմապատկման աղյուսակը, թվաբանական գործողությունները, օտար լեզուների, բանաստեղծությունների բառերը, կարճ ասած այն ամենը, ինչ պետք է անգիր գիտենալ:

Ինչքան շատ վարժություններ կատարես, այնքան հաստատուն կվարժվես: Դրանցից դժվար կլինի շեղվել, խաթարվել, նրանք միշտ հիշողության «մակերես կբարձրանան» ուզածդ պայմաններում՝ գրատախտակի առջև լինես կանգնած թե «արթնացնեն գիշերվա կեսին»:

Այնպես մի՛ հասկանա, թե ամբողջ դասը պետք է բերանացի անես:

Այն, ինչ հասկանալի է, շատ կրկնություն չի պահանջում:

Եթե դու դասի իմաստը լավ հասկանաս, ապա կուզենաս պատմել քո խոսքերով: Հասկացածը, հայտնի մի հոգեբանի խոսքերով, խտացած ամպի է

նման, պատրաստ հորդելու խոսքի հեղեղով:

Որպեսզի դասը գրատախտակի մոտ չմոռանաս, ահա՛ թե ինչ արա:

Նյութի մեջ առանձնացրու ա՛յն, ինչ պետք է հասկանալ, և այն, ինչ պետք է անգիր անել: Անգիր պետք է անել բնորոշումները, տարեթվերը, անունները, աշխարհագրական անվանումները և անպայմա՛ն՝ պատասխանի պլանի կետերը:

Հիշի՛ր. պլանն անհրաժեշտ է: Այն պետք է թղթի վրա գրել, կամ էլ, եթե կարող ես, մտածել ու պահել մտքում:

Ի՞նչ է նշանակում մտածել:

Հասկանալ կարդացածը: Տեքստը բաժանել ամբողջական մասերի: Կարողանալ ամեն մի մասի իմաստն արտահայտել մի նախադասությամբ կամ մի բառով:

Ուշադրությու՛ն դարձրու. դա նաև ինքն իրեն ստուգելու միջոց է: Եթե այդպիսի խոսք կամ նախադասություն գրել ես, ուրեմն տեքստը հասկացել ես:

Մտածված դարձվածքներն էլ հենց պլանի կետերն են, որոնք, պետք է ոտանավորի պես անգիր անել:

Մի՛ վախենա աշխատելուց. ինչքան շատ ես հուզվում գրատախտակի մոտ, այնքան ավելի պետք է դասը պատրաստես: Անհրաժեշտ է, որ հիշողությունդ ամուր պաշար ունենա: Եվ մի՛ նայիր քո «ավելի երջանիկ», ավելի հանգիստ ընկերներին: Մի՛ նախանձիր: Այո՛, նրանց բնավորությունը օգնում է նրանց դասի ժամանակ ավելի, քան քոնը՝ քեզ: Բայց նրանք էլ, երևի, իրենց խնդիրներն ունեն:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

*ԱՐՄԵՆ ՊԱԼԹԱՅԱՆ, 10 տ.,*
*Գալուստյան ազգային վարժարան, Կահիրե*





# «ՀԱՅՐ, ԿԱՊՐԵ՜...»

ՍՈՒՐԵՆ ՂԱԶԱՐՅԱՆ

Պողե... մեր թաղի մանչուկներիս համար հարազատ անուն:

Ծարունակ ժպտում էր: Երբ հարցնում էին որպիսությունը, կոպերը լայնանում էին, աչքերը փայլում, խոր շունչ էր քաշում ու թեթևացած պատասխանում.

— Լա՜վ եմ:

Այդքանը միայն:

Պողե... Հավանաբար Պողոսի կըրճատ՝ ավելի մտերմիկ ձևն էր: Հանդիպելիս գրպանից մի քանի կոնֆետ էր հանում ու բաժանում մեզ: Չէինք հրաժարվում, փոխարենը հարցեր էինք տալիս:

— Ո՞նց ես, Պողե՛:

— Ե՞րբ ես փողոցը ջրելու, օգնենք:

Նայում էր մեզ ու քթի տակ ժպտում:

Որևէ տեղ չէր աշխատում: Ի վիճակի էլ չէր աշխատելու, 1915-ը տեսած, տանջված էր ու բզկտված: Բայց հանգիստ էլ չէր մնում: Հասնում-օգնում էր ում ինչով կարող էր: Դուրս էր գալիս փողոց, փոքրիկ դույլը ձեռքին, հանում կոշիկները և ոտաբոբիկ մտնում մայթեզրով ձգվող առվի մեջ, սկսում փողոցը ջրել:

Ջրում էր մի մեծ հատված, չէր հոգնում, ջրում էր ու ջրում:

— Ծոգ է, փոշին խեղդում է,— ասում էր ու ջրում: Իսկ մենք՝ թաղի երեխաներս՝ մի կարճ վարտիքով, ընկնում էինք առվի սառնորակ ջրի մեջ, զովանում, ջուր նետում միմյանց, խանգարում նրան: Նա ժպտում էր ու ժպտում, գուցե իր մանկությունն էր հիշում:

Մենք շատ էինք սիրում փոշու մեջ կորած ու արևի տակ կիզվող, կավածեփ ցածրիկ տնակներով և միշտ մանկական աշխույժով լի մեր փողոցը:

Հավաքվում էինք և մինչ ուշ երեկո հեքիաթներ լսում ու խորհրդավոր պատմություններ՝ կարմիր հրամանատարների, փոքրիկ վրիժառուների և նրանց սխրագործությունների մասին: Տուն էինք գալիս ուշ, քնում մեր լսածների տպավորություններով, երազում տեսնում մեր սիրած հերոսներին, նրանց հետ քայլում ու հերոսանում:

Հրամանատար դառնալու միտքը մեզ հանգիստ չէր տալիս: Համլետը ցանկանում էր հեծելազորային դառնալ, Անուշավանը՝ օդաչու: Ես, տենչում էի կտրել մեր մոլորակի ծովերն ու օվկիանոսները, անցնել աշխարհը ծայրից ծայր և բարձր-բարձր աղաղակել ի լուր բոլորի, որ ես կամ, հայ եմ, ապրում ու գոյատևում եմ: Այդ մասին պատմում էինք Պողեին, նա լռում էր, ոչինչ չէր ասում, հուզվում էր ու դեմքը վառվում էր ուրախությունից, մանկան պես գլուխը վար ու վեր անում, կամաց շշնջում.

— Լա՜վ է, լա՜վ...

Երբ հոգնում էինք զրույցներից, բաժանվում էինք երկու խմբի ու խաղում «Կարմիրների ու սպիտակների» մեր սիրած խաղը, որն, իհարկե, միշտ ավարտվում էր կարմիրների հաղթանակով:

Իսկ Պողեն... Նա շարունակում էր իր բարի գործը, ջրում էր ու ջրում փողոցն ու մայթերը: Մագթաղ տատը շատ ծեր էր և ոչ ոք չուներ: Դժվարանում էր

թաղի մյուս ծայրից, Գասպար քեռու խանութի մոտ գտնվող ջրի միակ ծորակից դույլերով ջուր հասցնել տուն:

— Մեղք է, օգնենք,— ասում էր Պողեն ու գնում դույլերն առնում նրա ձեռքից:

Ու՞մ ասես, որ չէր օգնել նա: Երբ դրամ էին տալիս, նեղանում էր... Բայց սիրով նստում էր բարի մարդկանց հարկի տակ, նրանց սեղանից հաց կտրում:

Մեր բակում մի չինարի ծառ կար և ծառի կատարին արագիլի բույն: Սիրում էինք այդ ծառը, որն ասես մեր ժողովրդի կենսունակության խորհրդանիշն էր, սիրում էինք արագիլի բույնը և գարնան ավետաբեր արագիլներին:

Մի օր, երբ արագիլները չվել էին տաք երկրներ, եկան մարդիկ, կտրեցին ծառը: Այնտեղ նոր տուն պետք է կառուցվեր:

Պողեն, դույլերը ձեռքին քարացավ, երբ տեսավ հսկա չինարին գետին տապալված, այլայլվեց, աչքերը մթնեցին ու ինքն էլ փլվեց պատի տակ ընկած հսկա կոճղի վրա:

— Արագիլի բույնը ինչու՞ կքանդեն... Արագիլը որ վերադառնա, որտե՞ղ ապրի...

Կտրեցին ծառը և նրա տեղը փայտե, երկհարկանի տուն սկսեցին կառուցել, որին այն ժամանակ մեզ համար անհասկանալի լեզվով «բարաքներ» էին անվանում:

Պողեն նայում էր ընկած չինարուն, վերև ելնող տանը...

— Բալա՛մ, ե՞րբ են Հայաստան աշխարհում դալար չինարին կացնի տակ դրել, փայտե տուն շինելու համար:

— Մարդիկ տուն չունեն, Պողե՛, պետք է շուտ տեղավորել,— բացատրում էին մարդիկ:

Մենք՝ մեր բակի մանչուկներս, հավաքվել էինք նրանց կողքին, քիթ-քթի տվել ու մանկական հետաքրքրությամբ լսում էինք կյանքի ոլորապտույտ ճամփաներով անցած մեծերի խորախորհուրդ պատմությունները:

Չինարին կտրելուց և նոր տունը կառուցելուց հետո, Պողեն հաճախ էր երեվում բակում, պտտվում փայտե բարաքի շուրջը, կանգնում տապալված չինարու կողքին: Տարօրինակ մի հանգստություն էր իջել նրա վրա, հոգին խաղաղվել էր:

Մի օր էլ, տեսանք Պողեն կռացած, կացինը ձեռքին երկու մասի է բաժանում տապալված չինարին: Վազեցինք ու շրջապատեցինք նրան: Նա ոգևորված հարվածում էր, հա՛ հարվածում... և երբ ավարտեց, թեթև շունչ քաշեց, սրբեց դեմքի ու ճակատի քրտինքացողը, հաղթական նայեց մեզ ու շշնջաց.

— Արագիլները ուր որ է կգան:

Ամեն ինչ պարզ էր, պետք էր բույն շինել, հենց այս տան կտուրին: Նա վաղուց էր այդ ծրագրել, կոցրել հանգիստը ու վերջապես որոշել, որ անպայման պետք է որպես հենասյուն օգտագործել նույն չինարի ծառը:

Մոռացած ճաշ ու ընթրիք, վազում էինք տնից-տուն, մեխ ու փայտակտորներ հավաքում, միացնում միմյանց... Ահա և ամեն ինչ պատրաստ է: Մնում էր այն բարձրացնել տանիք, ամրացնել այնտեղ: Դժվար էր, բայց չէինք նահանջում: Պողեն իր երկրորդ երիտասարդությունն էր ապրում... Արագիլների համար բույն էր պատրաստում, պատրաստում էր ու վերհիշում Արաքսից այն կողմ մնացած հայրենի տունը... Սև խիստ հոնքերը բարձրանում էին, կոպերը լայնանում, խիստ ու թափանցող հայացքն ուղղվում էր հեռու-հեռուներ, մի պահ կտրվում իրականությունից:— Ի՜նչ անիրավ ժամանակներ էին, ի՜նչ անիրավ մարդիկ...

Գարնան առաջին օրերն էին: Ինչ-

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

պես միշտ, վազվզում, խաղում էինք բակում։

— Եկա՜ն, եկա՜ն,— հանկարծ գոռացին Արմենն ու Սեխը։

Նայեցինք վերև։ Օդում նորակառույց բարաքների վրա պտտվում էին մեր հին բարեկամները։ Բայց չգիտես ինչու, չէին իջնում մեր այնքան մեծ ոգևորությամբ պատրաստած բնի վրա։ Ասես կասկածում էին, ճախրում էին

բարձր-բարձր ու ինչ-որ բանից անհան-գըստացած խորհրդակցում: Չկար չի-նարին, չկար իրենց պատրաստած հին, տաքուկ բույնը, վշտացած պը-տըտվում էին անվստահ, մեզ էլ վըշ-տացնում:

— Իզուր ենք չարչարվել,— տխուր-տխուր ասում է մեկը:

— Տղանե՛ր, կարո՞ղ է պատահի, որ թողնեն գնան,— հարցնում է մյու-սը:

— Դե, ի՞նչ եք ասում, չե՞ք տեսնում անընդհատ բնի շուրջն են պտտվում:

Շուտով Պողեն էլ եկավ: Ուրախու-թյանը սահման չկար, երբ տեսավ օդում ճախրող արագիլներին: Զարմանալի ա-պարած է մարդը, շա՞տ բան է հարկա-վոր նրան իր վաղանցուկ կյանքը գե-ղեցիկ դարձնելու և վրան ուրախանա-լու համար: Անես նախկին Պողեն չէր, քայլում էր թեթև, ժպիտը դեմքին ու նայում վերև:

— Կիջնեն...— հուզմունքով ասաց նա:

Իրոք, արագիլները մի քանի րոպեից իջան տանիքին, ուսումնասիրեցին չորս բոլորը, մեկը բարձրացավ, մի քանի պտույտ գործեց բարձր սյան ծայրին ամրացված զամբյուղի շուրջը, այս ան-գամ՝ շատ ցածրից, և իջավ փափուկ խոտերի վրա: Նա իր երկար ու կարմ-րավուն կտուցով ինչ-որ ստուգեց, հարթեցրեց տեղը և դեպի վեր բարձ-րացնելով երկարավիզ գլուխը՝ ասես կանչեց ընկերներին:

Քիչ անց, նրան միացան նաև մյուս-ները: Իսկ մենք թեթևացած շունչ քա-շեցինք, ուրախությունից վեր-վեր էինք թռչում ու գոռում.

— Ուռա՜... ուռա՜...

Պողեն ժպտում էր, քթի տակ խոսում.

— Գարունն էլի եկավ... լա՜վ է, շա՜տ լավ...

Մտաբերում եմ մեր նախկին փոքրիկ, անշուք քաղաքը՝ նեղ, ծուռումուռ, փո-շոտ փողոցներով, խաղողի ու պտղա-տու ծառերի այգիների մեջ ընկղմված: Հիշում եմ Սունդուկյանը՝ այժմյան Լե-նինի պողոտան, առնում լավաշի փռերից բուրող հացի բուրմունքը:

Հիշում եմ փոշու մեջ կորած այդ նեղլիկ փողոցում տրամվայի գծերի շի-նարարությունը և առաջին տրամվայ-ների ալացքը, որն այնքան մեծ զարմանք և ուրախություն պատճառեց մեզ: Հապա ծառախիտ այգիների մեջ սկսված Ժողտան շինարարությունը:

Չկա այլևս փայտե բարաքը, չկան մայթեզրի առվակները, չկա հայ ժող-վըրդի մի փոքրիկ, աննկատ բեկորը՝ սիրելի Պողեն, ու չկա նաև բույնն ա-րագիլի:

Տխրություն է իջնում իմ հոգու վրա, բայց և ցնծագին մի ուրախություն, ու-րախությո՜ւն, քանզի չինարի ծառե-րից էլ բարձր վեր են խոյացել քանի-քանի նոր թաղամասեր, բարձր ու հոյակապ բարձրաբերձ տներով, ուր բույն են դրել հարյուրավոր ու հազա-րավոր պանդուխտ «կռունկներ»: Դը-րանց տեսնելով Պողեն անպայման ու-րախ կժպտար ու իրքնիրեն կասեր.

— Հայը կապրե՜, հայը պիտի ապ-րե՜...



ՆՈՐԱՅՐ ԽՓՐԽՄՅԱՆ

***

Հանգած արևի շողերը վերջին,
Իրիկնամուտի զով մշուշներում,
Մանուշակ ծաղկի քնքուշ առէջքին
Իջավ ու քնեց մի փոքրիկ մեղու:

Երբ լուսաբացի արցունքից զարթնեց
Ծաղկի բաժակում մեղուն ցողահար,
Կարծես թե ինքը լուսաբաց բերեց
Ծաղկի բաժակում անմեղ ու արդար:

***

Ես ծեր եմ մի քիչ,
մի քիչ մանուկ եմ,
Մի քիչ արև եմ
ու մի քիչ հող,
Ես ջուր եմ մի քիչ
ու մի քիչ հուր եմ,
Մի քիչ ծաղիկ եմ
ու մի քիչ ցող:
Ես ամեն ինչ եմ,
խնդության ճիչ եմ,
Հաց արարող եմ
ու եղեգան փող:

# ՎԱԳՐԸ ԻՆՉՊԵՍ ԴԱՐՁԱՎ ՋՈԼԱՎՈՐ

**(Վիետնամական հեքիաթ)**

Այս պատահել է շա՜տ վաղուց:

Մի ջահել գյուղացի բրնձի դաշտում գործը երբ ավարտեց, արդեն կեսօր էր: Նստեց հանգստանալու իր հողակտորի մոտակա մեծ ծառի ստվերում: Հանգստանալու և նախաճաշելու՝ ուտելու հետը բերած խաշած բրինձը, որը փաթաթել էր դափնու հաստ ու ճկուն տերևներով:

Նրա գոմեշն էլ գնաց մտավ դաշտի եզրի թփուտները, սկսեց արածել: Արածեց, կշտացավ, հետո բանանի ծառի ստվերում նստեց և մտախոհ ծամում էր իր ծամոնը, ժամանակ առ ժամանակ էլ գլխի ծույլ շարժումով քշում ճանճերը:

Մեկ էլ նա զգաստացավ, քամին գիշատիչի հոտ էր բերում: Գոմեշը ոտքի ելավ և սպասեց, դունչը բարձրացնելով այնպես, որ եղջյուրները պանկեցին մեջքին:

Հայտնվեց վագրը: Մոտեցավ գոմեշին ու ասաց.

— Ես եկել եմ ոչ իբրև թշնամի: Ուզում եմ քեզ մի բան հարցնել: Ես ամեն օր տեսնում եմ քեզ, թաքնվելով այս հողակտորի շրջակա թփուտների մեջ: Ինչպե՞ս պատահեց, որ մարդը, այդ երկոտանին, չունենալով ո՛չ առանձնապես մեծ ուժ, ո՛չ ահարկու տեսք, ստիպում է քեզ աշխատել: Ախր դու նրանից տաս անգամ խոշոր ես և նույնքան էլ դիմացկուն:

— Ես քեզ ոչինչ ասել չեմ կարող,— պատասխանեց բարեհիրտ գոմեշը,— պարզապես միշտ եղել է այնպես, որ ես ենթարկվել եմ մարդու կամքին: Նա «խելք» կոչվող մի ինչ-որ կախարդական թալիսման ունի:

— Ինձ շատ անհրաժեշտ է իմանալ, թե ի՞նչ բան է այդ,— ասաց վագրը,— եթե ես այդ թալիսմանն ունենամ, կիշխեմ բոլոր գազանների վրա: Փոխանակ հետևեմ ու հետապնդեմ զոհիս կհրամայեմ նրան տեղում անշարժանալ, կմոտենամ, կուտեմ: Կարող եմ նույնիսկ ընտրություն անել, ուտել



միայն այն կենդանիներին, որոնց միսը ավելի համով է:

— Այո՛,— համաձայնեց գոմեշը,— բայց գնա և մարդու՛ն իր գաղտնիքի մասին հարցրու ինքդ:

Եվ վագրը գնաց: Հայտնվեց գյուղացու առջև և շատ քաղաքավարի հարցրեց.

— Պարո՛ն մարդ, ես մեծ եմ, ուժեղ, արագավազ, բայց ինձ դարձյալ էլի ինչ-որ բան է հարկավոր: Լսել եմ, դու ունես «խելք» կոչվող մի բան, շնորհիվ որի բոլոր կենդանիները ենթարկվում են քեզ: Չէ՞ս կարող զիջել ինձ մի քիչ խելք: Սաստիկ անհրաժեշտ է այդ ինձ:

— Ինչու՞ չէ, կտամ,— պատասխանեց մարդը: Նա վախեցավ վագրից:— Բայց ես իմ խելքը տանն եմ թողել: Իմացած եղիր, որ դաշտ աշխատանքի գնալիս ոչ ոք խելքը հետը չի վերցնում: Եթե ուզում ես կգնամ՝ կբերեմ:

— Կարո՞ղ եմ ես քեզ հետ գալ:

— Ավելի լավ է դու մնաս այստեղ: Գյուղի մարդիկ քեզ տեսնեն՝ կվախենան և վախից կսպանեն քեզ: Այստե՛ղ սպասիր ինձ:

Եվ գյուղացին մի քանի քայլ գնաց դեպի գյուղը: Ապա վերադարձավ և ասաց.

— Գիտե՞ս ինչ, ես վախենում եմ, որ իմ բացակայության ժամանակ հանկարծ ուզենաս իմ գոմեշին ուտել:

Վագրը չիմացավ ինչ պատասխանի:

Իսկ մարդն ասաց.

— Եթե թույլ տաս, ես քեզ կկապեմ ծառին: Այդ դեպքում հանգիստ կլինեմ:

Վագրը համաձայնեց: Մարդը պարանով կապեց նրան մեծ ծառի բնին և գնաց տուն ու բերեց բրնձի չոր ծղ-



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

դոտներ, շաղ տվեց ծառի շուրջն ու վառեց:

— Ահա քեզ իմ խելքը,— ձայնեց նա վագրին:

Բոցերով շրջապատված գազանն սկսեց գոռալ, այնպես ահարկու, որ ողջ ջունգլին ցնցվեց: Հետո նա կաղկանձելով խնդրեց մարդուն՝ բաց թողնել իրեն: Մարդն ուզեց բաց թողնել, բայց կրակն հասավ պարանին, այրեց այն: Վագրը կրակի միջից դուրս թռավ, նետվեց թփուտները, վառվող պարանը վզին, բուրդը շերտ-շերտ վառված...

Ահա այսպես եղավ: Ժամանակը մինչև օրս չի կարողացել նրա դեղին մորթու վրայից ջնջել զոլ-զոլ՝ վառվածի սև հետքերը: Իսկ մարդն էն գլխից խելացի եղել է, խելացի էլ մնում է:



ՊԻՈՆԵՐ-ի փոստը

# ԲԱՐԵՎ, ԹԱՆԿԱԳԻՆ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ

Մենք ապրում ենք հեռավոր Յակուտիայում: Հիմա մեզ մոտ 30—35 աստիճան սառնամանիք է: Բայց դա դեռևս տաքն է: Սառնամանիքներն այստեղ հասնում են 60, երբեմն էլ 70 աստիճանի: Որքան էլ ցուրտ լինի, մենք դպրոց ենք հաճախում:

Մեր ավանը փոքր է, ընդամենը հարյուր ընտանիք: Ունենք ութամյա դպրոց, խանութ, հիվանդանոց, մանկապարտեզ, մըսուր, փոստ: Անասնապահական մեծ ֆերմա կա՝ բազմացնում են խոշոր եղջերավոր անասուններ:

Մեր դպրոցը բավականին հին է, կառուցված է 1932 թվականին: Այժմ սովորում են 96 աշակերտ:

Դպրոցում երրորդ տարին է, ինչ գործում է «Երկնագույն երկրագունդ» ինտերնացիոնալ բարեկամության ակումբը: Ակումբի անդամներս ուզում ենք նամակագրական կապ հաստատել Հայաստանի պիոներ-դպրոցականների հետ: Հուսով ենք, դուք կարձագանքեք և շատ լավ բարեկամություն կստեղծվի մեր միջև:

Մեր հասցեն է.

**Якутская АССР, 678315, Котайский р-н, п. Чагда, школа, КИД.**



Պիոներական և դպրոցական կյանք

# ՀԻՎԱՆԴԱՍԵՆՅԱԿ՝ ԳՐՔԵՐԻ ՀԱՄԱՐ

Արտաշատի շրջանի Դալար գյուղի միջնակարգ դպրոցի գրադարանը մեծ է ու լուսավոր: Գրքերը մշակված ու տեղադրված են ըստ բաժինների: Օրվա թերթերն ու ստացված ամսագրերը դրված են սեղաններին: Ազատ րոպեներին աշակերտը կարող է օգտվել դրանցից: Պատերին փակցված «Հեքիաթների աշխարհ», «Մանկական աշխարհ», «Մասնագիտության ընտրություն» վահանակները պատմում են աշակերտներին գրքերի, մուլտիպլիկացիոն կինոնկարների, հեքիաթների սիրելի հերոսների մասին:

Այստեղ ամեն ինչ տրամադրում է ընթերցելու, որևէ բան սովորելու, իմանալու: Սակայն ամենաուշագրավն այն անկյունն է, ուր գրված է «Գրքերի հիվանդանոց» և կողքին էլ ահա այսպիսի քառատող.

Ով էլ լինի իմ տեղն հիմա,
Ճիշտ եմ ասում, չի դիմանա:
Մեկ տարին դեռ չի լրացել,
Հաշմանդամ եմ արդեն դարձել:

Այդ անկյունում առանձնացված են անփույթ, անխնա վերաբերմունքից տուժած գրքերը:

— Ինչու՞ եք առանձնացրել,— կը-հարցնի այցելուն:

— Որպեսզի բուժենք՝ վերանորոգենք,— կհետևի պատասխանը:

— Ինչու՞ եք թողել, որ անխնա վերաբերմունքից այսքան տուժեն և «հիվանդասենյակ» ընկնեն գրքերը:

— Երբ շահագործման հանձնվեց դպրոցի նոր մասնաշենքը և բարձր դասարանցիները տեղափոխվեցին այնտեղ, հնարավորություն եղավ գրադարանն էլ տեղափոխել,— կպատասխանեն ձեզ,— նախկին գրադարանում ընթերցողները հազիվ էին ելումուտ անում: Իսկ այժմ այստեղ անգամ հոկտեմբերիկների հետ պարապմունքներ անցկացնելու լավ պայմաններ ունենք:

Գրքերը վերանորոգում են դասերից հետո, ակտիվ ընթերցողներից կազմված խմբակի անդամները, որոնց շըրջանակը օրեցօրին ընդարձակվում է: Գրքերը վերականգնելուց բացի, խմբակի անդամները նաև բացատրական աշխատանք են տանում ընթերցողների հետ, որպեսզի նրանք սովորեն խնամքով վարվել գրքի հետ:

ԱԼՖՐԵԴԱ ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

# ՄԵՐ ՓՈՔՐԻԿ ՊԱՇՏՊԱՆՆԵՐԸ

Մարդու օրգանիզմն ամեն վայրկյան ենթարկվում է իրեն շրջապատող արտաքին աշխարհի ազդեցություններին, որոնք միշտ չէ, որ բարենպաստ են:

Վտանգավոր գործոններից նա պաշտպանվում է զանազան միջոցներով, որոնցից են մաշկը, լորձաթաղանթը, ըստամոքսահյութը, արցունքը, թուքը, տարբեր գեղձերի արտազատուկները, լյարդը, որն ի դեպ հանդիսանում է թունավոր նյութեր չեզոքացնող մի ամբողջ լաբորատորիա: Պաշտպանության համար առավել կարևոր և առաջնային է արյան դերը: Նա կազմում է մարդու քաշի 7 տոկոսը (1/13 մասը) և բաղկացած է պլազմայից ու ձևավոր տարրերից (կարմիր և սպիտակ գնդիկներ, թրոմբոցիտներ): Ֆրանսիացի հայտնի գիտնական Կլոդ Բերնարը արյունն անվանել է «օրգանիզմի հայելի», ուր արտացոլվում են նրա հյուսվածքներում և օրգաններում տեղի ունեցող նույնիսկ ամենաաննշան ու նուրբ փոփոխությունները:

Առանձնապես մեծ է սպիտակ արյան բջիջների՝ լեյկոցիտների դերը, որոնք ամենաակտիվ մասնակցությունն են ցուցաբերում պաշտպանության ընթացքում: Այդ փոքրիկ «ասպետները» հանդիսանում են մեր արթուն ու անխոնջ պահակները: Նրանք առաջինն են ներգրավվում անզիջում պայքարի մեջ՝ օրգանիզմի վրա հարձակված կամ ներխուժած մանրէների և օտարածին նյութերի դեմ, ջանալով վտանգազերծել նրանց:

Լեյկոցիտների թիվը հասուն մարդու 1 մմ$^3$ արյան մեջ տատանվում է 4500-ից մինչև 10000-ի միջև, բայց որակը և քանակը առանձին դեպքերում, ինչպես օրինակ հիվանդությունների ժամանակ, ենթարկվում են զգալի փոփոխությունների: Այդ տատանումները առանձնապես ցայտուն են բորբոքումների, վարակների, թարախային երևույթների և արյան հիվանդությունների ժամանակ: Նման դեպքերում նրանց քանակը անհամեմատ ավելանում է, իսկ թունավորումների և ճառագայթման ընթացքում ընդհակառակը՝ քըչանում: Լեյկոցիտների կառուցվածքի հարցերի ուսումնասիրություններ ը թեկուզ ունեն հարյուրամյա պատմություն, բայց առ այսօր սպառված չեն: Առանձնապես բացահայտված չեն նրանց նուրբ կառուցվածքի առանձնահատկություններ ը: Չնայած դրան, բժիշկները հիվանդությունների ախտորոշումը և նրանց ընթացքի փոփոխությունները ստուգելու նպատակով միշտ էլ դիմում են արյան ձևավոր տարրերի քննություններին, գտնելով, որ լեյկոցիտները նաև հանդիսանում են օրգանիզմի իսկական կեցության նուրբ և զգայուն լրատուները:

Այժմ շատ գիտնականներ դրանց ուսումնասիրության հետ են կապում նաև մարդկության երազանքի իրականացումը՝ հյուսվածքների և օրգանների պատվաստման հնարավորությունը:

*ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ*
*կենսաբանության թեկնածու, բժիշկ*



# ԹՌՉԵՆՔ,

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

— Հիշո՞ւմ ես,— ասաց մորեղբայրս,— առաջ Վարդավառի տոնն ինչպե՞ս էինք տոնում, ճիշտ է, լավ չէինք ապրում, բայց մարդիկ ուրիշ էին... Գաթա ու նազուկ էին թխում, բարձրանում էինք մատուռը... Դուրս էինք գալիս վրաններից, երգեր էինք երգում, պարեր պարում... Եվ ծիծաղո՞ւմ էինք...

— Հիշում եմ,— ասացի ես,— բարձրանում էինք մատուռը... գույնզգույն ծաղիկներ կային, ամպերի մեջ ճախրող բազեներ...

— Հիմա ամեն մեկը մի ոչխար են մորթում ու մտնում վրանները: Մի քանի բաժակ խմելուց հետո, միմյանց քարշ են տալիս, զոռով հյուրասիրում...

— Առաջ կյանքն ուրիշ էր, մարդիկ ուրիշ էին,— ասացի ես,— մարդիկ ողջ գիշեր գաթա, նազուկ էին թխում, առավոտ շուտ բարձրանում Լալվարի գագաթը: Բոլոր գյուղերից գալիս էին, ի՞նչ երգեր էին երգում... Ի՞նչ պարեր էին պարում...

Հիշողություններից հուզվելով, մենք նայեցինք Լալվարի գագաթին, մենակությունից կծկված մատուռի կողմը: Մորեղբայրս մի պահ լռելուց հետո վեր թռավ տեղից: Ես նրա ներսից, լեռնային թռչունի ճիչ լսելով, գլխի ընկա, որ նա արտակարգ բան է անելու: Զարմանալի մարդ է, արդեն հիսուն տարեկան է, բայց կարծես քսան տարեկան լինի՝ լեռնային թռչունի նման ճչում է ու անպայման մի արտակարգ բան անում:

Վրաններից քիչ այն կողմ կանգնած էր թրթուրավոր տրակտորը: Գործի գցելով, ձեռքով արեց: Դեմքը փայլում էր, ինչպես երեխա ժամանակ, երբ գընում էինք գետակում լողանալու:

— Նստի՛ր,— ասաց մորեղբայրս,— իմ տրակտորը որոշեց մեզ բարձրացնել Լալվարի գագաթը:

— Մենավոր մատուռը տխրում է և մեզ է սպասում,— ասացի ես:

— Լեռան կատարն ու մենավոր մատուռը տխրում ու մեզ են սպասում,— ասաց մորեղբայրս,— շո՛ւտ արա, նըստի՛ր:

Մարդիկ սկսեցին դուրս գալ վրաններից, հավաքվել մեր շուրջը: Սակայն մենք չէինք լսում ոչ մեկի ձայնը, ուզում էինք գժություն անել, որպեսզի մարդիկ դուրս գան վրաններից ու նայեն վեր, նայեն լեռան կատարին, ուր մենությունից տխուր կծկվել էր մատուռը:

— Գնացինք,— ասաց մորեղբայրս,



# ՔԱՆԻ ԿԱՐՈՂ ԵՆՔ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ն. մենք տիեզերական երկրորդ արագությամբ շարժվեցինք առաջ։

Վերելքը գնալով դժվարանում էր։ Բայց մորեղբորս հզոր տրակտորը հռնդալով, մագլցում էր թեք լանջերով, քարերի վրայով կողքից կողք թեքվելով ու մռնչալով։

— Ծրջվիր տե՛ս, նայու՞մ ես,— ասաց մորեղբայրս։

— Նայում եմ,— ետ շրջվելով ասացի ես,— բոլորը դուրս են եկել վրաններից։

— Լավ է,— ասաց մորեղբայրս։

— Իջնելն ավելի դժվար կլինի,— ասացի ես, որովհետև թեքությունը գնալով ավելի էր մեծանում, ես սկսում էի վախենալ։

— Կարևորը բարձրանալն է,— ասաց մորեղբայրս,— բարձրանալիս պետք չէ մտածել իջնելու մասին։ Հետո էլ ասում ես, թե աշխարհի բոլոր գրքերը կարդացել ես...

Տրակտորը մեկ-մեկ շնչահեղձ էր լինում։ Ապա կանգ էր առնում և ուժերը հավաքելով, նորից, կանաչ գորգը ճանկռելով, շարժվում դեպի վեր։

— Տրակտորը մեջքի վրա ետ կշրջվի,— արդեն վախենալով, ասացի ես։

— Դեռ առաջվա նման վախկոտ ես,— ծիծաղեց մորեղբայրս,— մի բանաստեղծությու՛ն արտասանիր:

Ես, լավ իմանալով նրա անզիջում բնավորությունը, սկսեցի բարձրաձայն արտասանել:

— Քո գրածներից,— լեռնային թռչունի ձայնով ճչաց մորեղբայրս:

— Մինչև գագաթ դեռ շատ կա,— ասացի ես:

— Ուզո՞ւմ ես, ես արտասանեմ,— ասաց մորեղբայրս,— բանաստեղծություն գրողը ետ շրջվելուց չի վախենա... Ուզու՞մ ես: Հենց հիմա մի բանաստեղծություն գրեցի...

— Կարդա՛,— ծիծաղեցի ես և վշխս անցավ, մոռացա վերելքի ու ետ շրջվելու մասին:

Մորեղբայրս պինդ բռնելով ղեկը, ետ շրջվեց, նայեց ներքևում հավաքված մարդկանց կողմը, որոնք արդեն փոքրփոքր էին երևում, ու սկսեց բարձրաձայն արտասանել:

— Դա իմն է,— ծիծաղեցի ես:

— Ո՛չ,— ասաց մորեղբայրս,— մերն է՝ իմն ու քոնը:

— Լա՞վն է...

— Ուրիշներինը կարող է լավը կամ վատը լինել,— ասաց մորեղբայրս,— իսկ սա մերն է:

Բոլոր մարդիկ այդ պահին նայում էին մեզ՝ աշխարհի բոլոր մարդիկ: Նայում էին, թե ինչպես ենք, մորեղբորս տրակտորով, տիեզերական երկրորդ արագությամբ, բարձրանում Լալվարի գագաթը և մեր ետևից, մեր ոտնահետքերը շարվում ու խոր, անջնջելի ճանապարհ էին դառնում: Եվ այդ ճանապարհն անմիջապես սկսում էր կարոտել մարդկանց:

Գագաթի մոտ թեքությունն ավելի էր մեծանում, վերելքը դառնում անհնարին: Ես նայում էի մորեղբորս դեմքին և նրա վճռական շարժումներից զգում, որ ետ դարձողը չի: Իսկ ներքևում մարդիկ արդեն մրջյունների չափ էին երևում: Վերջապես հասանք գագաթին: Մեզնից վերև միայն արծիվներն էին: Հմայված նայում էի չորս կողմ: Բոլոր կողմերով, ինչքան աչքդ կտրի, լեռներ ու անտառներ էին: Եվ կարմիր ու սպիտակ տանիքներով գյուղեր:

Երկար ժամանակ լուռ նայում էինք: Ես մտածում էի, թե հիմա մորեղբայրս կբացի թևերն ու կթռչի: Հանկարծ մորեղբայրս լեռնային թռչունի ճիչ արձակեց, բացեց թևերն ու սկսեց գլորվել կանաչների վրա: Ես նույնպես բացեցի թևերս ու սկսեցի գլորվել կանաչների վրա: Ապա մորեղբայրս վազելով բերեց գինու շիշը:

— Լավ թռանք, չէ՞...

— Լավ էր,— ծիծաղեցի ես:

— Դեռ թռչում ենք,— մի քիչ տխուր ասաց մորեղբայրս,— թռչենք՝ քանի կարող ենք:

Լեռան հակառակ կողմից մի քանի տղամարդ էին բարձրանում դեպի մեզ: Մեկը շալակած մի գառ էր բերում:

— Է՜, հե՜... հե՜յ...— դեպի ներքև կանչեց մորեղբայրս:

— Է՜, հե՜... հե՜յ...— կանչեցին ներքևից:

— Հարևան գյուղից են... Ընկերներս են,— երջանկությունից շողշողալով, ասաց մորեղբայրս,— լսել են տրակտորիս ձայնը, գալիս են:

— Եվ չեն էլ զարմացել,— ասացի ես:

— Իսկ ի՞նչ կա զարմանալու,— պատասխանեց մորեղբայրս, ապա լռջանալով, երկար նայեց ինձ ու շատ լուրջ ասաց.

— Կարևորն այն է, որ մարդիկ կարողանան նայել միմյանց աչքերի մեջ...

Այդ պահին մորեղբայրս դարձավ նորից հիսուն տարեկան:



# ԺՊԻՏՆԵՐ

Հայրը մորուք պահեց և ցանկացավ տնեցիների կարծիքն իմանալ:

— Հը, ինչպե՞ս է մորուքս:

Փոքրիկ Դավիթը արագ վրա բերեց:

— Պապ, այնքան լավն ես, որ ես կարծեցի ուրիշ քեռի ես...

Հայրը տան պատերն էր գաջում: Երեքամյա Գառնիկը քաշեց հոր թևքից.

— Հայրիկ, գնանք դուրս, այնտեղ ցեխ շատ կա, ինչքան ուզես, կխաղաս...

Տնարարության ուսուցչուհին հարցրեց.

— Կարինե, ինչպե՞ս կարելի է միսը երկար ժամանակ թարմ պահել:

— Շատ հեշտ: Եթե կեղանին չմորթենք, միսը երկար ժամանակ թարմ կմնա:

Ծույլիկ Գևորգը դիմեց Անահիտին.

— Տուր քո գրիչով գրեմ:

— Ինչո՞ւ, իսկ քոնը ո՞ւր է:

— Իմը շատ սխալներ է անում:

— Մայրիկ ատամս ցավում է,— ասաց Արայիկը:

— Դա շատ կոնֆետ ուտելուց է:

— Բայց ես կոնֆետ ուտում եմ բոլոր ատամներով, իսկ ինչո՞ւ մեկն է ցավում:

— Աշոտիկ, լուսինն է հեռո՞ւ, թե՞ Անգլիան:

— Իհարկե Անգլիան:

— Ինչո՞ւ:

— Որովհետև, լուսինը տեսնում ենք, Անգլիան՝ ոչ:

Տղայի չար արարքի համար մայրը բարկացավ.

— Ինչ կասեր ուսուցչուհին, եթե այդ չարությունը դպրոցում կատարեիր...

— Կասեր, այ տղա, քեզ կարգին պահիր, դու հո ձեր տանը չես...

— Լուսիկ, ինչո՞ւ է տնային աշխատանքդ եղբայրդ կատարել...

— Որովհետև երեկ մարտի 8-ն էր և մայրիկը հանգստանում էր...

— Դու որտե՞ղ ես ծնվել,— հարցրեց Աշոտիկը:

— Ես՝ Երևանում,— պատասխանեց Սուրիկը,— իսկ դու՞...

— Ես՝ հիվանդանոցում...

— Ինչո՞ւ, դու հիվանդ էի՞ր...

*Հավաքեց ՀԵՂՈՒՇ ԹՈՒՄԱՆՅԱՆԸ*





# ԻՄ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀԸ





*Ինքնանկար*

## ՌԱՖԱՅԵԼ

XIV դարի վերջին Իտալիայում իր համար ճանապարհ է հարթում հումանիստական (մարդասիրական) շարժումը, որը գալիս է փոխարինելու միջնադարյան սխոլաստիկային: Ամենավառ կերպով այդ շարժումը արտահայտվել է Վերածննդի կամ Ռենեսանսի (իտալ.) դարաշրջանում՝ XV դարի երկրորդ կեսին և XVI-ի սկզբին: Դա հումանիստական դպրոցների, գրականության ու կերպարվեստի ծաղկման ժամանակաշրջանն էր: Չնայած մարդու գործունեության բոլոր բնագավառների բուռն վերելքին, ժամանակը՝ այդ անկրկնելի դաշտավորը, առաջատար տեղը հատկացնում է արվեստին՝ ճարտարապետությանը, քանդակագործությանը, գեղանկարչությանը: Վերածննդի ականավոր նկարիչների մեջ լեռնագագաթների պես առանձնանում են Լեոնարդո դա Վինչին, Միքելանջելոն և Ռաֆայելը:

Ռաֆայել Սանտին ծնվել է 1483 թվի մարտի 28-ին Ուրբինոյում: Նրա հայրը գեղանկարիչ էր: Վաղ մանկությունից տղային արվեստի սեր էին ներշնչում, որ հազվագյուտ երևույթ չէր այն ժամանակ: Հաճախ արվեստի այս կամ այն ճյուղով զբաղվելը, որոշակի տեխնիկական հնարանքները հաղորդվում էին ընտանեկան գծով: Սակայն եթե ընտանիքի անդամներից որևէ մեկը արտակարգ ընդունակություններ էր ցուցաբերում, նրան որևէ մեծ վարպետի մոտ էին ուղարկում աշակերտելու: Այդպես էլ եղավ Ռաֆայելի հետ: 1500 թվին նա մեկնեց Պերուջա և ընդունվեց Ումբրիական գեղանկարչական դպրոցի առաջատար վարպետ Պյետրո Պերուջինոյի արվեստանոցը: Այստեղ նա ստեղծում է «Մարիամի նշանադրությունը» (1503) մոնումենտալ կտավը: Այս իսկ ստեղծագործության մեջ նա հանդես է բերում տիպիկ ընդհանրացումների, մոնումենտալ դեկորի և ճարտարապետա-

կան մանրամասների հակում: Սակայն ուսումը Պերուջայում չի բավարարում Ռաֆայելին, նա մեկնում է Ֆլորենցիա (1504), որն այն ժամանակ Ռենեսանսի դարաշրջանի արվեստի երկու տիտանների՝ Լեոնարդո դա Վինչիի և Միքելանջելոյի միջև տեղի ունեցող ազնվագույն մենամարտի կենտրոնն էր: Այդ ժամանակ նրանք աշխատում էին Պալացցո Վեքքյոյի մեծ դահլիճի որմնանկարների վրա: Ըսկըզբնական շրջանում երիտասարդ գեղանկարչի վրա հսկայական ազդեցություն է ունենում Լեոնարդո դա Վինչին: Այսպես, նրա մինչև 1508 թիվն ստեղծած աստվածամայրերը թե՛ գեղանկարչական, թե՛ կոմպոզիցիոն տեսակետներից Լեոնարդոյի աստվածամայրերին են հիշեցնում: Միայն թե Ռաֆայելի աստվածամայրերը ավելի երկրային են, քան Լեոնարդոյինը:

1508 թվին Իտալիայի մշակութային կենտրոնը դառնում է Հռոմը, որտեղ արդեն աշխատում են Միքելանջելոն և ականավոր ճարտարապետ Բրամանտեն: Վերջինս Ռաֆայելի համաքաղաքացին էր և ղեկավարում էր սուրբ Պետրոսի տաճարի շինարարությունը: Նրա աջակցությամբ Հուլիոս II պապը Ռաֆայելին պալատ է հրավիրում և հանձնարարում հանդիսությունների դահլիճների (ստանցների) գունանկարումը: Թեմաներով սրանք կապված են անտիկ աշխարհի և քրիստոնեական եկեղեցու պատմության առասպելների հետ, բայց Ռաֆայելը, ելնելով իր ժամանակի մարդասիրական հայացքներից, ավելի խոր մեկնաբանություն է տալիս դրանց: Հատուկ խորությամբ ու վարպետությամբ են աչքի ընկնում Դելլա Սենյատուրա ստանցի որմնանկարները, այդ թըվում՝ «Աթենքյան դպրոցը» և դըէլիոդորոսստանցի «Պետրոս առաքյալի ազատումը զնդանից»: Նկարիչը առաջին որմնանկարի կենտրոնական դեմքերն է դարձնում Պլատոն և Արիստոտել փիլիսոփաներին: Նրանք կարծես մարդկային մտքի թռիչքը, մարդկային ոգու ուժն են խորհրդանշում: Որմնանկարի անկյունում նկարիչը իրեն է պատկերում մուգ գույնի բերետով:



*Սիքստինյան տիրամայր*



*Պլատոնը և Արիստոտելը (Հատված «Աթենքյան դպրոց» որմնանկարից)*

Երկրորդ որմնանկարը աչքի է ընկնում լարված, դրամատիզմով հագեցած մթնոլորտով: Նկարիչը նման տպավորության է հասնում շնորհիվ վարպետորեն օգտագործված գիշերային լուսավորությանը:

Հռոմեական ժամանակաշրջանում Ռաֆայելը շարունակում է զբաղվել կավալետային գեղանկարչությամբ, ստեղծելով իր աստվածամայրերին և ժամանակակիցների դիմանկարներ: Վերջիններս, թեև խիստ պաշտոնական դեմքեր էին (նա նկարում է կաթոլիկ եկեղեցու գլխավորներին, ազնվականության ներկայացուցիչներին), շատ ռեալիստական են: Նկարիչը ճշմարտացիորեն է հաղորդում ո՛չ միայն պատկերված մարդու արտաքինը, այլև ներաշխարհը: Ռաֆայելի աստվածամայրերից ամենանշանավորը «Սիքստինյան տիրամայրն» է (1515 թ.), որն այժմ գտնվում է Դրեզդենի պատկերասրահում: Նա տարբերվում է մյուսներից մարդկային բարդ ապրումի արտակարգ խորությամբ և հուզական ներգործության ուժով: Նրա մեջ նկարիչը տեսնում է որդու ճակատագրի համար տագնապով լցված մորը:

Իր ականավոր ժամանակակիցներ Լեոնարդո դա Վինչիի ու Միքելանջելոյի պես Ռաֆայելը վերածննդի դարաշրջանի ամենավառ դեմքերից է: Նա Հռոմի սուրբ Պետրոսի տաճարի գլխավոր ճարտարապետն էր, ղեկավարում էր անտիկ հուշարձանների հետազոտության գործը, կատարում մոնումենտալ գունանկարներ, կրոնական սյուժեներով նկարներ ու դիմանկարներ:

Վախճանվեց ուժերի ծաղկման շրջանում՝ 1520 թվի ապրիլի 6-ին, դեռ կենդանության օրոք նվաճելով ժամանակակիցների ճանաչումը, որոնք նրան Հռոմի Պանթեոնում թաղեցին: Նրա բարեկամներից մեկը լատիներեն դամբանագիր գրեց.

«Այստեղ հանգչում է այն Ռաֆայելը, որից նրա կենդանության օրոք մեծ բնությունը վախենում էր պարտված լինել, իսկ նրա մահից հետո վախենում էր մեռնել»:

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



# ՇԱՏԱԽԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿԱՏԱԿԵՐԳ ԱՂՎԵՍԻ ՄԱՍԻՆ

Արագ, թեթև

























Աղվես կըսի իմ տեղ նեղ ի,
Խավու ճըտեր փորուս տեղ ի:
Վայ իմ չալիկ, չալմալալիկ,
Չալմատոտիկ, տմբլաճակատ,
Փամփլիկ ճըտեր, վու՜յ, վու՜յ,
Մի կերցուցեմ անուշ կուտիկ, վո՜ւյ, վո՜ւյ:
Աղվես էկավ լանջիկ-մանջիկ,
Վոտներ վազան կարճիկ-մարճիկ,
Աղվես նըստիր տարու կըլխուն,
Աչկեր իսկիր թաղ վառըկուն:

Աղվես կընաց մըտավ ճաղաց,
Թաթեր վերուց, մի բոլ խաղաց, վո՜ւյ, վո՜ւյ,
Տըղա Ավա՛ք, խասի մարաք
Քի կերցուցեմ մեղր ու կարաք,
Ծուտըմ ունիմ՝ մի ճիշատակ,
Աղվես տանի, մընամ տառտա՜կ:
Վայ իմ չալիկ, չալմալալիկ
Չալմատոտիկ, խատխատուտիկ,
Խուրիկ-մուրիկ, տմբլաճակատ,
Փամփլիկ ճըտեր, վո՜ւյ, վո՜ւյ,
Մի կերցուցեմ անուշ կուտիկ, վո՜ւյ, վո՜ւյ:




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 4 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981

Ինչպես էր աշխատում գիմնազիստ Ուլյանովը . . . . 2
Ստեղծագործում են դպրոցականները . . . . . . . 4
Օ. ՕՐԼՈՎ— Պիոներների ինքնաթիռը . . . . . . . 7
Ռ. ՄԱՐՈՒԽՅԱՆ— Կարմրաթուշ դեղձերը . . . . . . . 9
1980 թ. մեր մրցանակակիրները . . . . . . . 15
Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ— Զրույցներ լեզվի մասին . . . . 16
Գիտե՞ք որ . . . . . . . . . . . . 18
Հ. ՀԱԿՈԲՅԱՆ— Կատակ . . . . . . . . 19
Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Երեկո . . . . . . . . 21
Մեր ճյուրը— Արամ Սահակյան . . . . . . . 22
Վ. ԲԱԲԱՅԱՆ— Թռչունները, Առյուծն ու աղվեսը, Փիսոյի երազը . . . . . . . . . . 24
Պատրաստիր ինքդ . . . . . . . . . . 25
Դուրս եկ կախարդանքից . . . . . . . . 26
Ս. ՂԱԶԱՐՅԱՆ— «Հայը կայրե՞...» . . . . . . . 29
Ն. ԵՓՐԵՄՅԱՆ— Բանաստեղծություններ . . . . 33
Վագրը ինչպես դարձավ զոլավոր . . . . . . . 33
«Պիոներ»-ի փոստից . . . . . . . . . . 35
Ա. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ— Հիվանդասենյակ գրքերի համար 36
Վ. ԽԱՉՈՅԱՆ— Մեր փոքրիկ պաշտպանները . . . . 37
Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ— Ժպիտներ . . . . . . . . 41
Հ. ՎԱՐԴՈՒՄՅԱՆ— Թռչենք, քանի կարող ենք . . . 38
Իմ պատկերասրահը— Ռաֆայել . . . . . . . 42
Ճատախի ժողովրդական կատակերգ աղվեսի մասին 45
Ժամանց . . . . . . . . . . . . . . 47

Ճապիկի առաջին էջը՝ ԹԱԼԻՆ ԿԱՊԵՅԱՆԻ, 8 տ., Գալուստյան ազգային վարժարան, Կահիրե



Հանձնված է արտադրության 2.2.1981 թ.։ Ստորագրված է տպագրության 3.4.1981 թ.։ ՎՖ 03584։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն։ 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 61582։ Պատվեր 116։ Գինը 15 կ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2։

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.

# ԺԱՄԱՆՑ




Գտեք, թե տիեզերագնացներից յուրաքանչյուրը որ տիեզերանավից է դուրս եկել:



